Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի և ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 5

ՀԿ(բ)Կ-ի հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ — 1936

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 5




ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչ.— „Խորհրդ. Հայաստան.“
ՅԵՐԵՎԱՆ 1936

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագիր՝ Գինո Շաղգամյան
Պատ. քարտուղար՝ Գ. Հարությունյան
Սրբ. Հ. Մանուկյան և Հ. Դոլուխանյան
Հրատարակություն № 408. Պատ. № 1481:
Գլավլիտի լիազոր, № 2114— Ա
Տիրաժ 7000
ՊԵՏՀՐԱՏԻ ՏՊԱՐԱՆ. ՅԵՐԵՎԱՆ

# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

## Խորհուրդների VIII Համամիութենական Արտակարգ Համագումարում

# ԽՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԾԻ ՄԱՍԻՆ

Ընկեր ՍՏԱԼԻՆԻ՝ տրիբունի վրա յերեվալը դիմավորվում է ամբողջ դահլիճի յերկարատև փոթորկալի ովացիայով: Ամբողջ դահլիճը վոտքի յե կանգնում: Բոլոր կողմերից հնչում են բացականչություններ՝ «Ուռա՛ ընկեր ՍՏԱԼԻՆԻՆ», «Կեցցե՛ ընկեր ՍՏԱԼԻՆԸ», «Կեցցե՛ Մեծ ՍՏԱԼԻՆԸ», «Մեծ հանճար ընկեր ՍՏԱԼԻՆԻՆ ուռա՛», «Վի՛վատ», «Ռոտ ֆրո՛նտ», «Փա՛ռք ընկեր ՍՏԱԼԻՆԻՆ»:

## I

## ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԿԱԶՄՈՒՄԸ ՅԵՎ ՆՐԱ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ընկերնե՛ր:

*Սահմանադրական Հանձնաժողովը, վորի նախագիծը ներկայացված է այս Համագումարի քննարկմանը, կազմվել է, ինչ-*

պես հայտնի յե, ԽՍՀ Միության Խորհուրդների VII Համագումարի հատուկ վորոշման համաձայն: Այդ վորոշումն ընդունվել ե 1935 թվի փետրվարի 6-ին: Նա ասում ե.

«1. ԽՍՀ Միության Սահմանադրության մեջ փոփոխություններ մտցնել հետևյալ ուղղությամբ.

ա) ընտրական սիստեմի հետագա դեմոկրատացման՝ վոչ լրիվին հավասար ընտրությունները հավասար ընտրություններով փոխարինելու իմաստով, բազմաստիճան ընտրություններն՝ ուղղակի ընտրություններով, բաց ընտրությունները՝ փակ ընտրություններով փոխարինելու իմաստով.

բ) Սահմանադրության սոցիալ-տնտեսական հիմքը ճշգրտելու ուղղությամբ՝ Սահմանադրությունը՝ ԽՍՀՄ-ի դասակարգային ուժերի այժմյան փոխհարաբերությունների հետ համապատասխանեցնելու իմաստով (նոր սոցիալիստական ինդուստրիայի ստեղծումը, կուլակության ջախջախումը, կոլտնտեսային կարգերի հաղթությունը, սոցիալիստական սեփականության՝ վորպես խորհրդային հասարակության հիմքի՝ հաստատումը և այլն):



2. Առաջարկել ԽՍՀ Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեյին՝ ընտրել Սահմանադրական Հանձնաժողով, վորին հանձնարարել առաջին կետում մատնանշված հիմունքներով մշակել Սահմանադրության ուղղված տեքստը և ներկայացնել այն ԽՍՀ Միության Կենտգործկոմի Նստաշրջանին ի հաստատություն:

3. ԽՍՀ Միության մեջ խորհրդային իշխանության օրգանների մոտակա հերթական ընտրությունները կատարել նոր ընտրական սիստեմի հիման վրա:

Այս 1935 թվի փետրվարի 6-ին եր: Այս վորոշումն ընդունելուց մի օր հետո, այսինքն՝ 1935 թվի փետրվարի 7-ին, հավաքվեց ԽՍՀ Միության Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի Առաջին Նստաշրջանը և, ի կատարումն ԽՍՀՄ-ի Խորհուրդների VII Համագումարի վորոշման, կազմեց 31 հոգուց բաղկացած Սահմանադրական Հանձնաժողով: Նա հանձնարարեց Սահմանադրական Հանձնաժողովին մշակել ԽՍՀՄ-ի ուղղված Սահմանադրության նախագիծ:

Սրանք են այն ձևական հիմունքները և ԽՍՀՄ-ի գերագույն մարմնի դիրեկտիվնե-

մը, վորոնց հիման վրա իր աշխատանքը պետք է ծավալեր Սահմանադրական Հանձնաժողովը:

Այսպիսով Սահմանադրական Հանձնաժողովը պետք է փոփոխություններ մտցներ 1924 թվին ընդունված՝ այժմ գործող Սահմանադրության մեջ, ընդսմին հաշվի առնելով սոցիալիզմի ուղղությամբ կատարված այն տեղաշարժերը ԽՍՀ Միության կյանքի մեջ, վորոնք իրականացվել են 1924 թվից մինչև մեր որերն ընկած ժամանակաշրջանում:

## II

## 1924 ԹՎԻՑ ՄԻՆՉԵՎ 1936 ԹԻՎՆ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ ԽՍՀՄ-Ի ԿՅԱՆՔՈՒՄ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Վորո՞նք են ԽՍՀՄ-ի կյանքում տեղի ունեցած այն փոփոխությունները, վոր իրագործվեցին 1924 թվից մինչև 1936 թիվն ընկած ժամանակաշրջանում և վորոնք պետք է արտացոլեր Սահմանադրական Հանձնաժողովը Սահմանադրության իր նախագծում:



Վո՞րն է այդ փոփոխությունների էությունը:

Ի՞նչ ունեյինք մենք 1924 թվին:

Դա ՆԵՊ-ի առաջին շրջանն եր, յերբ Խորհրդային իշխանությունը թույլ տվեց կապիտալիզմի վորոշ աշխուժացում՝ սոցիալիզմի ըստ ամենայնի զարգացման հետ միասին, յերբ Խորհրդային իշխանությունը նկատի ուներ տնտեսության յերկու սիստեմների՝ կապիտալիստականի և սոցիալիստականի՝ մրցության ընթացքում կազմակերպել սոցիալիստական սիստեմի գերակշռությունը կապիտալիստականի հանդեպ: Խնդիրն այն եր, վոր այդ մրցության ընթացքում ամրացնեյինք սոցիալիզմի դիրքերը, հասնեյինք կապիտալիստական տարրերի վերացմանը և ավարտեյինք սոցիալիստական սիստեմի՝ վորպես ժողովրդական տնտեսության հիմնական սիստեմի՝ հաղթությունը:

Մեր արդյունաբերությունը, առանձնապես ծանր արդյունաբերությունը, այն ժամանակ աննախանձելի պատկեր եր ներկայացնում: Ճիշտ է, նա քիչ առ քիչ վերականգնվում եր, բայց դեռ շատ հեռու եր իր արտադրանքը նախապատերազմյան

մոնոպոլային հասցնելուց: Նա հիմնվում եր հին, հետամնաց և վոչ-հարուստ տեխնիկայի վրա: Իհարկե, նա զարգանում եր դեպի սոցիալիզմը: Մեր արդյունաբերության սոցիալիստական հատվածի տեսակարար կշիռն այն ժամանակ կազմում եր մոտավորապես 80 տոկոս: Բայց կապիտալիզմի հատվածը, այնուամենայնիվ, իր կողմն ուներ արդյունաբերության վոչ պակաս քան 20 տոկոսը:

Մեր գյուղատնտեսությունն էլ ավելի անհրապույր պատկեր եր ներկայացնում: Ճիշտ ե, կալվածատերերի դասակարգն արդեն վերացված եր, բայց դրա փոխարեն գյուղատնտեսական կապիտալիստների դասակարգը, կուլակների դասակարգը, դեռևս բավական նշանակալից ուժ եր ներկայացնում: Ամբողջությամբ առած՝ գյուղատնտեսությունն այն ժամանակ հիշեցնում եր անհատական գյուղացիական մանր տնտեսությունների մի անծայրածիր ովկիանոս՝ իրենց հետամնաց միջնադարյան տեխնիկայով: Այդ ովկիանոսում իբրև առանձին կետեր ու փոքրիկ կղզիներ գոյություն ունեյին կոլտնտեսություններ և խորհտնտեսություններ, վորոնք, իսկապես առած,



մեր ժողովրդական տնտեսության մեջ դեռևս փոքրիշատե լուրջ նշանակություն չունեյին: Կոլտնտեսություններն ու խորհտնտեսությունները թույլ եյին, իսկ կուլակը դեռևս պահպանում եր իր ուժը: Այն ժամանակ մենք խոսում եյինք վո՛չ թե կուլակության վերացման, այլ նրա սահմանափակման մասին:

Նույնը պետք ե ասել նաև ապրանքաշրջանառության մասին յերկրում: Ապրանքաշրջանառության մեջ սոցիալիստական հատվածը կազմում եր ինչ-վոր 50—60 տոկոս,—վոչ ավելի, իսկ ամբողջ մնացած ասպարեզը գրավված եր վաճառականների, սպեկուլյանտների և այլ մասնավորների կողմից:

Այս եր մեր եկոնոմիկայի պատկերը 1924 թվականին:

Ի՞նչ ունենք մենք այժմ, 1936 թվականին:

Յեթե այն ժամանակ մենք ունեյինք ՆԵՊ-ի առաջին ժամանակաշրջանը, ՆԵՊ-ի սկիզբը, կապիտալիզմի վորոշ աշխուժացման ժամանակաշրջանը, ապա այժմ մենք ունենք ՆԵՊ-ի վերջին ժամանակաշրջանը, ՆԵՊ-ի վախճանը, կապիտալիզմի լիակա-

տար վերացման ժամանակաշրջանը՝ ժողովրդական տնտեսության բոլոր վոլորտներում:

Սկսենք թեկուզ նրանից, վոր այդ ժամանակաշրջանում մեր արդյունաբերությունն աճեց, դարձավ մի վիթխարի ուժ: Այժմ արդեն չի կարելի այն թույլ և տեխնիկապես վատ զինված անվանել: Ընդհակառակը, այն հիմնված է այժմ նոր, ժամանակակից հարուստ տեխնիկայի վրա՝ ուժեղ կերպով զարգացած ծանր ինդուստրիայով և ե՛լ ավելի զարգացած մեքենաշինությամբ: Իսկ ամենից գլխավորն այն է, վոր կապիտալիզմն խայտառակ վտարված է մեր արդյունաբերության վոլորտից, իսկ արտադրության սոցիալիստական ձևն այժմ անբաժանելիորեն տիրապետող սիստեմ է հանդիսանում մեր արդյունաբերության բնագավառում: Չի կարելի մանրունք համարել այն փաստը, վոր մեր այժմյան սոցիալիստական ինդուստրիան, արտադրանքի ծավալի տեսակետից, ավելի քան յոթ անգամ գերազանցում է մինչպատերազմյան ժամանակի ինդուստրիային:

Գյուղատնտեսության բնագավառում մանր անհատական գյուղացիական տնտե-



սությունների ավելիանում փոխարեն՝ նրանց թույլ տեխնիկայով և կուլակի գերակշռությամբ՝ այժմ մենք ունենք աշխարհիս ամենախոշոր մեքենայացված, նոր տեխնիկայով զինված մի արտադրություն՝ կոլտնտեսությունների ու խորհտնտեսությունների համայնապարփակ սիստեմի ձևով: Բոլորին հայտնի յե, վոր կուլակությունը գյուղատնտեսության մեջ վերացված է, իսկ գյուղացիական մանր անհատական տնտեսությունների համամասը՝ նրա հետամնաց միջնադարյան տեխնիկայով՝ այժմ աննշան տեղ է գրավում, ընդվորում նրա տեսակարար կշիռը գյուղատնտեսության մեջ՝ ցանքի տարածությամբ չափված՝ 2—3 տոկոսից ավելի չի կազմում: Չի կարելի չնշել այն փաստը, վոր այժմ կոլտնտեսություններն իրենց տրամադրության տակ ունեն 316 հազար տրակտոր՝ 5·700·000 ձիու ուժի կարողությամբ, իսկ խորհտնտեսությունների հետ միասին ունեն ավելի քան 400 հազար տրակտոր՝ 7·580·000 ձիու ուժի կարողությամբ:

Ինչ վերաբերում է ապրանքաշրջանառությանը յերկրում, ապա փոխադրամիջոցներն

ու սպեկուլյանտներն իսպառ վտարված են այդ բնագավառից: Այժմ ամբողջ ապրանքաշրջանառությունը գտնվում է պետության, կոոպերացիայի և կոլտնտեսությունների ձեռքում: Ծնունդ առավ ու զարգացավ նոր, խորհրդային առևտուրը, առևտուր առանց սպեկուլյանտների, առևտուր առանց կապիտալիստների:

Այսպիսով սոցիալիստական սիստեմի լիակատար հաղթությունը ժողովրդական տնտեսության բոլոր վոլորտներում այժմ փաստ է:

Իսկ ի՞նչ է նշանակում այս:

Այս նշանակում է, վոր մարդու շահագործումը մարդու կողմից վոչնչացված է, վերացված է, իսկ արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը հաստատված է վորպես մեր խորհրդային հասարակության անսասան հիմքը: (Յերկարատև ծափահարություններ):

Վորպես արդյունք ԽՍՀՄ-ի ժողովրդական տնտեսության բնագավառում տեղի ունեցած այդ բոլոր փոփոխությունների՝ այժմ մենք ունենք նոր, սոցիալիստական եկոնոմիկա, վորը չգիտե ճգնաժամեր ու



գործազրկություն, չգիտե աղքատություն ու քայքայում և վորը տալիս է քաղաքացիներին բոլոր հնարավորությունները ունևոր ու կուլտուրական կյանքի համար:

Սրանք են հիմնականում այն փոփոխությունները, վորոնք տեղի ունեցան մեր եկոնոմիկայի բնագավառում 1924 թվից մինչև 1936 թիվն ընկած ժամանակամիջոցում:

ԽՍՀՄ-ի եկոնոմիկայի բնագավառում տեղի ունեցած այդ փոփոխություններին համապատասխան՝ փոխվեց նաև մեր հասարակության դասակարգային կառուցվածքը:

Կալվածատերերի դասակարգը, ինչպես հայտնի յե, արդեն վերացված եր քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտման հետևանքով: Ինչ վերաբերում է մյուս շահագործող դասակարգերին, ապա նրանց ել բաժին ընկավ կալվածատերերի դասակարգի բախտը: Չկա այլևս կապիտալիստների դասակարգն արդյունաբերության բնագավառում: Չկա այլևս կուլակների դասակարգը գյուղատնտեսության բնագավառում: Չկան այլևս վաճառականներն ու սպեկուլյանտներն ապրանքաշրջա-

տեսության բնագավառում։ Այդպիսով, բոլոր շահագործող դասակարգերը վերացվեցին։

Մնաց բանվոր դասակարգը։

Մնաց գյուղացիների դասակարգը։

Մնաց ինտելիգենցիան։

Բայց սխալ կլիներ կարծել, վոր այս սոցիալական խմբերն այդ ժամանակամիջոցում վոչ մի փոփոխության չկրեցին, վոր նրանք մնացին այնպես, ինչպես եյին, ասենք, կապիտալիզմի ժամանակաշրջանում։

Վերցնենք, օրինակ, ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգը։ Ըստ հին հիշողության՝ նրան հաճախ կոչում են պրոլետարիատ։ Բայց ի՞նչ ե պրոլետարիատը։ Պրոլետարիատը մի դասակարգ ե, վոր զրկված ե արտադրության գործիքներից ու միջոցներից, տնտեսության մի այնպիսի սիստեմի ժամանակ, յերբ արտադրության գործիքներն ու միջոցները պատկանում են կապիտալիստներին և յերբ կապիտալիստների դասակարգը շահագործում ե պրոլետարիատին։ Պրոլետարիատը — դա կապիտալիստների կողմից շահագործվող դասակարգն ե։ Բայց մեզ մոտ, ինչ-



պես հայտնի յե, կապիտալիստների դասակարգն արդեն վերացված ե, արտադրության գործիքներն ու միջոցները խլված են կապիտալիստների ձեռքից և հանձնված պետությանը, վորի ղեկավար ուժը հանդիսանում ե բանվոր դասակարգը։ Հետևաբար, չկա այլևս կապիտալիստների դասակարգը, վորը կարողանար շահագործել բանվոր դասակարգին։ Հետևաբար, մեր բանվոր դասակարգը վո՛չ միայն զրկված չե արտադրության գործիքներից ու միջոցներից, այլ, ընդհակառակը, նա դրանց տերն ե ամբողջ ժողովրդի հետ միասին։ Իսկ քանի վոր նա դրանց տերն ե, իսկ կապիտալիստների դասակարգը վերացված ե, բացառված ե բանվոր դասակարգի շահագործման ամեն մի հնարավորություն։ Կարելի՞ յե արդյոք դրանից հետո մեր բանվոր դասակարգը պրոլետարիատ անվանել։ Պարզ ե, վոր չի կարելի։ Մարքսն ասում եր. վորպեսզի պրոլետարիատն ազատագրի իրեն, նա պետք ե ջախջախի կապիտալիստների դասակարգը, խլի կապիտալիստներից արտադրության գործիքներն ու միջոցները և վոչընչացնի արտադրության այն պայմանները,

վորոնք պրոլետարիատ են ծնում: Արդյոք կարելի՞ յե ասել, վոր ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգն արդեն իրականացրել ե իր ազատագրման այդ պայմանները: Անպայման կարելի յե և պետք ե ասել: Իսկ այդ ի՞նչ ե նշանակում: Այդ նշանակում ե, վոր ԽՍՀՄ-ի պրոլետարիատը փոխարկվել ե միանգամայն մի նոր դասակարգի, ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգի, վորը վոչնչացրել ե տնտեսության կապիտալիստական սիստեմը, հաստատել ե արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականություն և տանում ե խորհրդային հասարակությունը կոմունիզմի ուղիով:

Ինչպես տեսնում եք, ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգը— դա մի բոլորովին նոր, շահագործումից ազատագրված բանվոր դասակարգ ե, վորի նմանը մարդկության պատմությունը դեռ չի իմացել:

Անցնենք գյուղացիության հարցին: Սովորաբար ընդունված ե ասել, թե գյուղացիությունը— դա մանր արտադրողների մի այնպիսի դասակարգ ե, վորի անդամներն ատոմացված են, ցիրուցան յեղած ամբողջ յերկրի յերեսին, անհատաբար փորփրում են հետամնաց տեխնիկա



ունեցող իրենց մանր տնտեսություններում, մասնավոր սեփականության տերուկներ են և անպատիժ կերպով շահագործվում են կալվածատերերի, կուլակների, վաճառականների, սպեկուլյանտների, վաշխառուների կողմից և այլն: Յեվ իրոք, գյուղացիությունը կապիտալիստական յերկրներում, յեթե նկատի ունենանք նրա հիմնական մասսան, հենց՝ այդպիսի դասակարգ ե հանդիսանում: Արդյոք կարելի՞ յե ասել, թե մեր արդի գյուղացիությունը, խորհրդային գյուղացիությունը՝ իր մասսայով առած՝ նման ե այդպիսի գյուղացիության: Վո՛չ, այդ չի կարելի ասել: Այդպիսի գյուղացիություն մեզ մոտ արդեն չկա: Մեր խորհրդային գյուղացիությունը միանգամայն նոր գյուղացիություն ե: Մենք այլևս չունենք կալվածատերեր ու կուլակներ, վաճառականներ ու վաշխառուներ, վորոնք կարողանային շահագործել գյուղացիներին: Հետևաբար, մեր գյուղացիությունը շահագործումից ազատագրված գյուղացիություն ե: Այնուհետև, մեր խորհրդային գյուղացիությունն իր ճնշող մեծամասնությամբ կոլտնտեսային գյուղացիություն ե, այսինքն՝ նա իր աշ-

խատանքը և իր ստացվածքը հիմնում ե ո՛չ թե անհատական աշխատանքի ու հետամնաց տեխնիկայի վրա, այլ կոլեկտիվ աշխատանքի և արդի տեխնիկայի վրա: Վերջապես, մեր գյուղացիության տնտեսության հիմքում դրվում ե ո՛չ թե մասնավոր սեփականությունը, այլ կոլեկտիվ սեփականությունը, որն աճել ե կոլեկտիվ աշխատանքի բազայի վրա:

Ինչպես տեսնում եք, խորհրդային գյուղացիությունը—դա միանգամայն նոր գյուղացիություն ե, որի նմանը դեռ չի իմացել մարդկության պատմությունը:

Անցնենք, վերջապես, ինտելիգենցիայի հարցին, ինժեներ—տեխնիկական աշխատողների, կուլտուրական ճակատի աշխատողների, ընդհանրապես ծառայողների և այլոց հարցին: Ինտելիգենցիան նույնպես մեծ փոփոխություններ ե կրել անցած ժամանակաշրջանում: Այդ արդեն այն հին, կոշտացած ինտելիգենցիան չե, որը փորձում եր դասակարգերից վեր դասել իրեն, բայց իսկապես՝ իր մասսայով առած՝ ծառայում եր կալվածատերերին ու կապիտալիստներին: Մեր խորհրդային ինտելիգենցիան—դա միանգամայն նոր ինտելի-



գենցիա յե, որը բոլոր արմատներով կապված ե բանվոր դասակարգի ու գյուղացիության հետ: Փոխվել ե, նախ՝ ինտելիգենցիայի կազմը: Ազնվականությունից և բուրժուազիայից յելածները կազմում են մեր խորհրդային ինտելիգենցիայի փոքր տոկոսը: Խորհրդային ինտելիգենցիայի 80—90 տոկոսը — դա բանվոր դասակարգից, գյուղացիությունից և աշխատավորության այլ շերտերից յելածներն են: Փոխվել ե, վերջապես, ինտելիգենցիայի գործունեության նաև բուն բնույթը: Առաջ նա պետք ե ծառայեր հարուստ դասակարգերին, որովհետև նրա համար այլ յելք չկար: Այժմ նա պետք ե ծառայի ժողովրդին, որովհետև շահագործող դասակարգերն այլևս չկան: Յեվ հենց այդ պատճառով այժմ նա իրավահավասար անդամ ե խորհրդային հասարակության, որտեղ նա բանվորների ու գյուղացիների հետ մեկտեղ, նրանց հետ միասին լծված, կատարում ե նոր անդասակարգ սոցիալիստական հասարակության կառուցումը:

Ինչպես տեսնում եք, դա բոլորովին նոր, աշխատավոր ինտելիգենցիա յե, ո-

րի նման չենք գտնի յերկրագնդի վոչ մի յերկրում:

Սրանք են այն փոփոխությունները, վորոնք կատարվել են անցած ժամանակաշրջանում՝ խորհրդային հասարակության դասակարգային կառուցվածքի բնագավառում:

Ինչի՞ մասին են խոսում այդ փոփոխությունները:

Նախ՝ նրանք ասում են այն, վոր սահմանագծերը բանվոր դասակարգի և գյուղացիության միջև, ինչպես և այդ դասակարգերի ու ինտելիգենցիայի միջև, ջնջվում են, իսկ դասակարգային հին բացառիկությունը անհետանում է: Այդ նշանակում է, վոր տարածությունն այդ յերկու սոցիալական խմբերի միջև ավելի ու ավելի կրճատվում է:

Յերկրորդ՝ նրանք ասում են այն, վոր տնտեսական հակասություններն այդ սոցիալական խմբերի միջև՝ ընկնում են, ջնջվում են:

Վերջապես, նրանք ասում են այն, վոր ընկնում ու ջնջվում են նաև քաղաքական հակասությունները նրանց միջև:

Այսպես է բանը ԽՍՀՄ-ի դասակարգա-



յին կառուցվածքի բնագավառում տեղի ունեցած փոփոխությունների նկատմամբ:

ԽՍՀՄ-ի հասարակական կյանքում կատարված փոփոխությունների պատկերը լրիվ չէր լինի, յեթե մի քանի խոսք չասեյինք մի բնագավառում ևս կատարված փոփոխությունների մասին: Յես նկատի ունեմ ազգային փոխհարաբերությունների բնագավառը ԽՍՀ Միությունում: Ինչպես հայտնի յե, Խորհրդային Միության մեջ մտնում են մոտ վաթսուն ազգ, ազգային խմբեր ու ժողովուրդներ: Խորհրդային պետությունը բազմազգ պետություն է: Հասկանալի յե, վոր ԽՍՀ Միության ժողովուրդների փոխհարաբերությունների հարցը չի կարող առաջնակարգ նշանակություն չունենալ մեզ համար:

Ինչպես հայտնի յե, Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը կազմվել է 1922 թվականին՝ ԽՍՀՄ-ի Խորհուրդների առաջին համագումարում: Նա կազմվել է ԽՍՀՄ-ի ժողովուրդների հավասարության ու կամավորության սկզբունքներով: Այժմ գործող Սահմանադրությունը, վորն ընդունվել եր 1924 թվականին, ԽՍՀ Միության առաջին

Սահմանադրությունն ե: Դա այն ժամանակաշրջանն եր, յերբ հարաբերությունները ժողովուրդների միջև դեռ ինչպես հարկն ե չեյին կարգավորված, յերբ վելիկոռուսների հանդեպ ցուցաբերվող անվստահության մնացուկները դեռ չեյին անհետացել, յերբ կենտրոնախույս ուժերը դեռևս շարունակում եյին գործել: Հարկավոր եր այդ պայմաններում կարգավորել ժողովուրդների յեղբայրական համագործակցությունը՝ տնտեսական, քաղաքական ու ռազմական փոխադարձ օգնության հիման վրա, միացնելով նրանց, որպես միութենական բազմազգ պետություն: Խորհրդային իշխանությունը չեր կարող չտեսնել այդ գործի դժվարությունները: Նա ուներ իր առջև բազմազգ պետությունների անհաջող փորձերը բուրժուական յերկիրներում: Նա ուներ իր առջև հին Ավստրո-Հունգարիայի տապալված փորձը: Յեվ, այնուամենայնիվ, նա դիմեց բազմազգ պետություն ստեղծելու փորձին, որովհետև նա գիտեր, որ սոցիալիզմի հիմքի վրա առաջացած բազմազգ պետությունը պետք ե դիմանար



բոլոր ու ամեն տեսակ փորձություններին:

Այդ ժամանակից անցել ե 14 տարի: Մի ժամանակաշրջան, որը բավական ե փորձն ստուգելու համար: Յեվ ի՞նչ: Անցած ժամանակաշրջանն անտարակուսելիորեն ցույց տվեց, որ սոցիալիզմի հիմքի վրա ստեղծված բազմազգ պետություն կազմելու փորձը լիովին հաջողվել ե: Դա լենինյան ազգային քաղաքականության անկասկածելի հաղթությունն ե: (Յերկարատև ծափահարություններ):

Ինչո՞վ բացատրել այս հաղթությունը:

Ազգամիջյան կռիվների հիմնական կազմակերպիչներ հանդիսացող շահագործող դասակարգերի բացակայությունը· փոխադարձ անվստահություն մշակող և ազգայնական կրքեր բորբոքող շահագործման բացակայությունը· բանվոր դասակարգի իշխանության գլուխ լինելը, մի դասակարգ, որը հանդիսանում ե ամեն տեսակ ստրկացման թշնամի և ինտերնացիոնալիզմի գաղափարների հավատարիմ կրող· ժողովուրդների փոխադարձ օգնության իրական կենսագործումը տնտեսական ու հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում·

վերջապես, ԽՍՀՄ-ի ժողովուրդների ազգային կուլտուրայի ծաղկումը՝ ազգային ըստ ձևի և սոցիալիստական ըստ բովանդակության,— այս բոլորը և սրանց նման գործոնները հասցրին այն բանին, որ արմատապես փոխվեց ԽՍՀՄ-ի ժողովուրդների կերպարանքը, անհայտացավ նրանց միջից փոխադարձ անվստահության զգացմունքը, զարգացավ նրանց մեջ փոխադարձ բարեկամության զգացմունքը և այդպիսով կարգավորվեց ժողովուրդների իսկական եղբայրական համագործակցությունը միասնական միութենական պետության սիստեմում։

Իբրև արդյունք մենք ունենք այժմ միանգամայն կազմավորված և բոլոր փորձություններին դիմացած բազմազգի սոցիալիստական պետություն, որի ամրությունը կարող էր նախանձել ամեն մի ազգային պետություն աշխարհի ամեն մի մասում։ (Բուռն ծափահարություններ)։

Սրանք են այն փոփոխությունները, որոնք տեղի յեն ունեցել ԽՍՀՄ-ում անցած ժամանակաշրջանում, ազգային փոխհարաբերությունների ասպարեզում։

Այս է 1924 թվից մինչև 1936 թիվն ըն-



կած ժամանակաշրջանում ԽՍՀՄ-ի տնտեսական ու հասարակական – քաղաքական կյանքում տեղի ունեցած փոփոխությունների ընդհանուր հանրագումարը։

## III
## ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԾԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ի՞նչ արտացոլում են ստացել ԽՍՀՄ-ի կյանքում տեղի ունեցած այդ բոլոր փոփոխությունները նոր Սահմանադրության նախագծում։

Այլ կերպ ասած՝ որո՞նք են այս Համագումարի քննությանը ներկայացված Սահմանադրության նախագծի հիմնական առանձնահատկությունները։

Սահմանադրական Հանձնաժողովին հանձնարարված էր փոփոխություններ մտցնել 1924 թվականի Սահմանադրության տեքստում։ Որպես Սահմանադրական Հանձնաժողովի աշխատանքի արդյունք ստացվեց Սահմանադրության նոր տեքստ, ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագիծը։ Սահ-

մանադրական հանձնաժողովը, նոր Սահմանադրության նախագիծը կազմելիս, ելակետ է ունեցել այն, որ սահմանադրությունը չպետք է շփոթել ծրագրի հետ։ Այդ նշանակում է, որ ծրագրի ու Սահմանադրության միջև էական տարբերություն կա։ Մինչդեռ ծրագիրը խոսում է այն բանի մասին, որը դեռ չկա և որը դեռ պետք է ձեռք բերվի ու նվաճվի ապագայում, սահմանադրությունը, ընդհակառակը, պետք է խոսի այն բանի մասին, ինչ որ արդեն կա, ինչ որ արդեն ձեռք է բերված ու նվաճված է այժմ, ներկայումս։ Ծրագիրը վերաբերում է գլխավորապես ապագային, Սահմանադրությունը՝ ներկային։

Յերկու օրինակ՝ լուսաբանության համար։

Մեր խորհրդային հասարակությունը հասավ այն բանին, որ նա արդեն հիմնականում իրականացրեց սոցիալիզմը, ստեղծեց սոցիալիստական հասարակարգ, այսինքն՝ իրականացրեց այն, ինչ որ մարքսիստների մոտ այլ կերպ կոչվում է կոմունիզմի առաջին կամ ստորին փուլ։ Նշանակում է՝ մեզ մոտ արդեն հիմնակա-



նում իրականացված է կոմունիզմի առաջին փուլը՝ սոցիալիզմը։ (Յերկարատև ծափահարություններ)։ Կոմունիզմի այդ փուլի հիմնական սկզբունքն է, ինչպես հայտնի յե, հետևյալ ֆորմուլան. «յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի»։ Արդյոք մեր Սահմանադրությունը պե՞տք է արտացոլի այդ փաստը, սոցիալիզմի նվաճման փաստը։ Նա պե՞տք է արդյոք հիմնվի այդ նվաճման վրա։ Անպայման պետք է հիմնվի։ Պետք է, որովհետև սոցիալիզմը ԽՍՀՄ-ի համար այն է, ինչ որ արդեն ձեռք է բերվել և նվաճվել։

Բայց խորհրդային հասարակությունը դեռ չի հասել կոմունիզմի բարձրագույն փուլի իրականացմանը, որտեղ տիրապետող սկզբունքն է լինելու հետևյալ ֆորմուլան. «յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա պահանջմունքների», թեպետ և նա իր առջև նպատակ է դրել հասնել ապագայում կոմունիզմի բարձրագույն փուլի իրականացմանը։ Կարո՞ղ է արդյոք մեր Սահմա-

նադրությունը հիմնվել կոմունիզմի բարձրագույն փուլի վրա, վորը դեռ չկա և վորը դեռ պետք է նվաճվի: Վո՛չ, չի կարող, վորովհետև կոմունիզմի բարձրագույն փուլը ԽՍՀՄ-ի համար այն է, ինչ վոր դեռ չի իրականացված և ինչ վոր պետք է իրականացվի ապագայում: Չի կարող, յեթե նա չի ուզում ապագա նվաճումների ծրագրի կամ դեկլարացիայի վերածվել:

Սրանք են մեր Սահմանադրության շրջանակները տվյալ պատմական մոմենտում:

Այսպիսով, նոր Սահմանադրության նախագիծը ներկայացնում է անցած ուղու արդյունքը, արդեն ձեռք բերված նվաճումների արդյունքը: Հետևաբար, նա հանդիսանում է գրանցումն ու օրենսդրական ամրապնդումն այն բանի, ինչ վոր արդեն ձեռք է բերված ու նվաճված իրականում: (Բուռն ծափահարություններ):

Այս է ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագծի առաջին առանձնահատկությունը:

Այնուհետև: Բուրժուական յերկրների սահմանադրությունները սովորաբար յելնում են կապիտալիստական հասարակակարգի անսասան լինելու համոզմունքից: Այդ սահմանադրությունների գլխավոր հիմքն են



կազմում կապիտալիզմի սկզբունքները, նրա գլխավոր հիմունքները— հողի, անտառի, ֆաբրիկաների, գործարանների և արտադրության այլ գործիքների ու միջոցների մասնավոր սեփականությունը. մարդու շահագործումը մարդու կողմից և շահագործողների ու շահագործվողների առկայությունը. աշխատավոր մեծամասնության ապահովված չլինելը հասարակության մեկ բևեռում և չաշխատող, բայց ապահովված փոքրամասնության ճոխությունը մյուս բևեռում և այլն և այլն: Նրանք հենվում են կապիտալիզմի այս և սրանց նման հիմունքների վրա: Նրանք արտացոլում են այս ամենը, նրանք օրենսդրական կարգով ամրապնդում են այս բոլորը:

Ի տարբերություն դրանցից՝ ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագիծը յելնում է կապիտալիստական կարգերի վերացման փաստից, ԽՍՀՄ-ում սոցիալիստական կարգերի հաղթության փաստից: ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագծի գլխավոր հիմքը կազմում են սոցիալիզմի սկզբունքները, սրա գլխավոր հիմունքները, վորոնք արդեն նվաճված և իրականացված են—հողի, անտառի, ֆաբրիկաների,

գործարանների և արտադրության այլ գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը. շահագործման ու շահագործող դասակարգերի վերացումը. մեծամասնության աղքատության և փոքրամասնության ճոխության վերացումը. գործազրկության վերացումը. աշխատանքը՝ վորպես յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացու պարտականություն և պատվի պարտք՝ «ով չի աշխատում, նա չի ուտում» ֆորմուլայի համաձայն: Աշխատանքի իրավունքը, այսինքն՝ ապահովված աշխատանք ստանալու վերաբերյալ յուրաքանչյուր քաղաքացու իրավունքը, հանգստի իրավունքը, կրթության իրավունքը և այլն և այլն: Նոր Սահմանադրության նախագիծը հենվում է սոցիալիզմի այս և սրանց նման հիմունքների վրա: Նա արտացոլում է այդ հիմունքները, նա օրենսդրական կարգով ամրապնդում է դրանք:

Այս է Նոր Սահմանադրության նախագծի յերկրորդ առանձնահատկությունը:

Այնուհետև: Բուրժուական սահմանադրությունները լռելյայն յելնում են այն նախադրյալից, վոր հասարակությունը



բաղկացած է հակամարտ դասակարգերից, հարստության տեր դասակարգերից և հարստություն չունեցող դասակարգերից, վոր ինչ կուսակցություն էլ իշխանության գլուխն անցնի, հասարակության պետական ղեկավարությունը (դիկտատուրան) պետք է պատկանի բուրժուազիային, վոր սահմանադրությունը հարկավոր է ունևոր դասակարգին հաճելի ու ձեռնտու հասարակական կարգերն ամրապնդելու համար:

Ի տարբերություն բուրժուական սահմանադրություններից՝ ԽՍՀՄ-ի Նոր Սահմանադրության նախագիծը յելնում է այն բանից, վոր հասարակության մեջ այլևս հակամարտ դասակարգեր չկան, վոր հասարակությունը բաղկացած է յերկու միմյանց բարեկամ դասակարգերից՝ բանվորներից ու գյուղացիներից, վոր իշխանության գլուխ են կանգնած հենց այդ աշխատավորական դասակարգերը, վոր հասարակության պետական ղեկավարությունը (դիկտատուրան) պատկանում է բանվոր դասակարգին՝ վորպես հասարակության առաջավոր դասակարգի, վոր Սահմանադրությունը հարկավոր է նրա համար, վորպեսզի ամրապնդենք աշխատավորու-

թյանը ցանկալի և ձեռնտու հասարակական կարգերը:

Այս է նոր Սահմանադրության նախագծի յերրորդ առանձնահատկությունը:

Այնուհետև: Բուրժուական սահմանադրությունները լռելյայն յելնում են այն նախադրյալից, վոր ազգերը և ռասաները չեն կարող իրավահավասար լինել, վոր կան լիիրավ ազգեր և վոչ-լիիրավ ազգեր, վոր, բացի դրանից, գոյություն ունի ազգերի կամ ռասաների նաև յերրորդ կատեգորիա, որինակ՝ գաղութներում, վորոնք ունեն ե՛լ ավելի պակաս իրավունքներ, քան վոչ-լիիրավ ազգերը: Այս նշանակում է, վոր այդ բոլոր սահմանադրություններն իրենց հիմքում նացիոնալիստական են, այսինքն՝ տիրապետող ազգերի սահմանադրություններ են:

Ի տարբերություն այդ սահմանադրություններից՝ ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագիծը, ընդհակառակը, խորապես ինտերնացիոնալ է: Նա յելնում է այն բանից, վոր բոլոր ազգերն ու ռասաներն իրավահավասար են: Նա յելնում է այն բանից, վոր տարբերությունը մորթի գույնի կամ լեզվի, կուլտուրական մա-



կարդակի կամ պետական զարգացման մակարդակի միջև, ինչպես նաև վորևե այլ տարբերություն ազգերի և ռասաների միջև—չի կարող հիմք ծառայել այն բանի համար, վորպեսզի արդարացվի ազգային անիրավահավասարությունը: Նա յելնում է այն բանից, վոր բոլոր ազգերն ու ռասաները, անկախ նրանց անցյալ և ներկա դրությունից, անկախ նրանց ուժից ու թուլությունից,—պետք է ոգտվեն միատեսակ իրավունքներով հասարակության տնտեսական, հասարակական, պետական ու կուլտուրական կյանքի բոլոր վոլորտներում:

Այս է Սահմանադրության նոր նախագծի չորրորդ առանձնահատկությունը:

Նոր Սահմանադրության նախագծի հինգերորդ առանձնահատկությունը նրա հետեվողական և մինչև վերջը պահպանված դեմոկրատիզմն է: Դեմոկրատիզմի տեսակետից բուրժուական սահմանադրությունները կարելի յե յերկու խմբի բաժանել. Սահմանադրությունների մի խումբն ուղղակի ժխտում է կամ փաստորեն վոչնչի յե վերածում քաղաքացիների իրավունքների հավասարությունը և դեմոկրատա-

կան ազատությունները։ Սահմանադրությունների մյուս խումբը սիրով ընդունում է և մինչև անգամ ցուցադրում է դեմոկրատական սկզբունքները, բայց միաժամանակ այնպիսի վերապահումներ ու սահմանափակումներ է անում, վոր դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները բոլորովին խեղաթյուրված են դուրս գալիս։ Նրանք խոսում են հավասար ընտրական իրավունքների մասին բոլոր քաղաքացիների համար, բայց տեղնուտեղը սահմանափակում են դրանք նստակեցությամբ և կրթական ու նույնիսկ գույքային ցենզով։ Նրանք խոսում են քաղաքացիների հավասար իրավունքների մասին, բայց տեղնուտեղը վերապահություն են անում, վոր այդ չի վերաբերում կանանց կամ նրանց վերաբերում է մասամբ։ Եվ այլն և այլն։

ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագծի առանձնահատկությունն այն է, վոր նա ազատ է այդպիսի վերապահումներից ու սահմանափակումներից։ Նրա համար գոյություն չունեն ակտիվ կամ պասիվ քաղաքացիներ, նրա համար բոլոր քաղաքացիներն ակտիվ են։ Նա



տարբերություն չի ընդունում տղամարդկանց ու կանանց, «նստակյացների» ու «վոչ-նստակյացների», ունևորների ու չունևորների, կրթվածների ու վոչ-կրթվածների իրավունքների միջև։ Նրա համար բոլոր քաղաքացիներն իրենց իրավունքներով հավասար են։ Վո՛չ թե գույքային դրությունը, վո՛չ թե ազգային ծագումը, վո՛չ թե սեռը, վո՛չ թե պաշտոնեական դրությունը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակություններն ու անձնական աշխատանքն են վորոշում նրա դրությունը հասարակության մեջ։

Վերջապես, նոր Սահմանադրության նախագծի մի առանձնահատկություն ևս։ Բուրժուական սահմանադրությունները սովորաբար սահմանափակվում են քաղաքացիների ձևական իրավունքների ֆիքսացիայով, չհոգալով այդ իրավունքների կենսագործման պայմանների մասին, նրանց կենսագործման հնարավորության մասին, նրանց կենսագործման միջոցների մասին։ Խոսում են քաղաքացիների հավասարության մասին, բայց մոռանում են, վոր չի կարող իսկական հավասարություն լինել տիրոջ ու բանվորի միջև, կալվածատիրոջ

ու գյուղացու միջև, յեթե առաջիններն ունեն հարստություն և քաղաքական կշիռ հասարակության մեջ, իսկ յերկրորդները զրկված են թե՛ մեկից և թե՛ մյուսից, յեթե առաջինները շահագործողներ են, իսկ յերկրորդները՝ շահագործվողներ: Կամ դարձյալ. խոսում են խոսքի, ժողովների և մամուլի ազատության մասին, բայց մոռանում են, վոր այդ բոլոր ազատությունները կարող են բանվոր դասակարգի համար դատարկ հնչյունի վերածվել, յեթե նա զրկված է իր տրամադրության տակ ժողովների համար հարմար շենքեր, լավ տպարաններ, տպագրական թղթի բավականաչափ քանակություն և այլն ունենալու հնարավորությունից:

Նոր Սահմանադրության նախագծի առանձնահատկությունն այն է, վոր նա չի սահմանափակվում քաղաքացիների ձևական իրավունքների ֆիքսացիայով, այլ ծանրության կենտրոնը փոխադրում է այդ իրավունքներն ապահովելու հարցի վրա, այդ իրավունքներն իրականացնելու միջոցների վրա: Նա վո՛չ թե սոսկ հռչակում է քաղաքացիների իրավունքների հավասարությունը, այլև ապահովում է այն՝ որենս-



դրական կարգով հաստատելով շահագործման ռեժիմի վերացման փաստը, քաղաքացիների ամեն մի շահագործումից ազատագրվելու փաստը: Նա վո՛չ թե սոսկ հռչակում է աշխատանքի իրավունք, այլև ապահովում է այն՝ որենսդրական կարգով հաստատելով ճգնաժամերի բացակայության փաստը խորհրդային հասարակության մեջ, գործազրկության վոչնչացման փաստը: Նա վո՛չ թե սոսկ հռչակում է դեմոկրատական ազատություններ, այլև դրանք որենսդրական կարգով ապահովում է նյութական վորոշ միջոցներով: Ուստի հասկանալի յե, վոր Նոր Սահմանադրության նախագծի դեմոկրատիզմը վո՛չ թե «սովորական» և «հանրաճանաչ» դեմոկրատիզմ է ընդհանրապես, այլ սոցիալիստական դեմոկրատիզմ:

Սրանք են ԽՍՀՄ-ի Նոր Սահմանադրության նախագծի հիմնական առանձնահատկությունները:

Այսպես են արտացոլված Նոր Սահմանադրության նախագծում ԽՍՀՄ-ի տնտեսական ու հասարակական-քաղաքական կյանքում տեղի ունեցած այն տեղաշար-

*ժերն ու փոփոխությունները, վորոնք իրականացվեցին 1924 թվից մինչև 1936 թիվն ընկած ժամանակաշրջանում։*

## IV

## ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԾԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ

*Մի քանի խոսք Սահմանադրության նախագծի բուրժուական քննադատության մասին։*

*Այն հարցը, թե ի՞նչպես ե վերաբերվում ոտարերկրյա բուրժուական մամուլը Սահմանադրության նախագծին, անկասկածորեն վորոշ հետաքրքրություն ե ներկայացնում։ Քանի վոր ոտարերկրյա մամուլն արտացոլում ե բուրժուական յերկրների բնակչության զանազան խավերի հասարակական կարծիքը, մենք չենք կարող անցնել այն քննադատության կողքով, վոր ծավալեց այդ մամուլը Սահմանադրության նախագծի դեմ։*

*Սահմանադրության նախագծի նկատմամբ ոտարերկրյա մամուլի ցույց տված վերաբերմունքի առաջին նշաններն արտահայտ-*



*վեցին վորոշ տենդենցով—լռության մատնել Սահմանադրության նախագիծը։ Տվյալ դեպքում յես նկատի ունեմ ամենառեակցիոն, ֆաշիստական մամուլը։ Քննադատների այդ խումբն ամենից լավ համարեց պարզապես լռության մատնել Սահմանադրության նախագիծը, գործը պատկերացնել այնպես, թե կարծես նախագիծ չի յեղել և ընդհանրապես այն չկա բնության մեջ։ Կարող են ասել, թե լռության մատնելը քննադատություն չե։ Բայց դա ճիշտ չե։ Լռության մատնելու մեթոդը, վորպես անտեսելու հատուկ յեղանակ, նույնպես քննադատության մի ձև ե, ճիշտ ե՝ հիմար ու ծիծաղելի, բայց և այնպես քննադատության ձև։* (Ընդհանուր ծիծաղ: Ծափահարություններ)։ *Սակայն լռության մատնելու նրանց մեթոդից բան դուրս չեկավ։ Վերջիվերջո նրանք հարկադրված յեղան բանալ փակիչը և աշխարհին հաղորդել, թե, վորքան էլ այդ ցավալի լինի, այնուամենայնիվ ԽՍՀՄ-ի Սահմանադրության նախագիծը գոյություն ունի, և վո՛չ միայն գոյություն ունի, այլև սկսում ե վնասակար ազդեցություն գործել մտքերի վրա։ Այլ կերպ չեր էլ կա-*

րող լինել, վորովհետև աշխարհիս յերեսին այնուամենայնիվ կա մի ինչ-վոր հասարակական կարծիք, ընթերցողներ, կենդանի մարդիկ, վորոնք ուզում են ճշմարտությունն իմանալ փաստերի մասին և վոչ մի հնարավորություն չկա յերկար ժամանակ խաբեբայության մամլիկի տակ պահել նրանց: Խաբեբայությամբ հեռու չես գնա...

Քննադատների յերկրորդ խումբն ընդունում ե, վոր Սահմանադրության նախագիծն իրոք գոյություն ունի բնության մեջ, բայց նա գտնում ե, վոր նախագիծը մեծ հետաքրքրություն չի ներկայացնում, վորովհետև նա ըստ եյության վո՛չ թե սահմանադրության նախագիծ ե, այլ դատարկ թղթի կտոր, դատարկ խոստում, վորը նպատակ ունի վորոշ մանյովր անել և մարդկանց խաբել: Ըստվորում նրանք ավելացնում են, վոր ԽՍՀ Միությունն ավելի լավ նախագիծ չեր ել կարող տալ, վորովհետև ԽՍՀՄ-ն ինքը վո՛չ թե պետություն ե, այլ ընդամենն աշխարհագրական հասկացողություն (ընդհանուր ծիծաղ), իսկ քանի վոր նա պետություն չի հանդիսանում, ապա նրա սահմանադրու-



թյունն ել չի կարող իսկական սահմանադրություն լինել: Քննադատների այս խմբի տիպիկ ներկայացուցիչ ե հանդիսանում, վորքան ել այդ տարորինակ լինի, գերմանական օֆիցիոզ «Դոյչե Դիպլոմատիշ-Պոլիտիշե Կորրեսպոնդենցը»: Այդ ժուռնալն ուղղակի ասում ե, թե ԽՍՀ Միության Սահմանադրության նախագիծը դատարկ խոստում ե, խաբեյություն, «պոտյոմկինյան գյուղ»: Նա առանց տատանվելու հայտարարում ե, վոր ԽՍՀ Միությունը պետություն չի հանդիսանում, վոր ԽՍՀ Միությունը «ներկայացնում ե վոչ այլ ինչ, բայց յեթե ճշգրիտ կերպով վորոշվող աշխարհագրական հասկացողություն» (ընդհանուր ծիծաղ), վոր ԽՍՀՄ-ի Սահմանադրությունը, այդ պատճառով, չի կարող իսկական սահմանադրություն ճանաչվել:

Ի՞նչ կարելի յե ասել այդպիսի, թող ներվի ասել, քննադատների մասին:

Իր հեքիաթ-պատմվածքներից մեկի մեջ ռուսական մեծ գրող Շչեդրինը տալիս ե շատ սահմանափակ ու բթամիտ, բայց չափազանց ինքնավստահ և տաքարյուն բյուրոկրատ սամոդուր մարդու տիպը: Այն

բանից հետո, յերբ այդ բյուրոկրատն իրեն «վստահացած» մարզում «կարգ ու անդորրություն» հաստատեց, բնաջինջ անելով հազարավոր բնակիչների և հրկիզելով տասնյակ քաղաքներ, նա նայեց իր շուրջը և հորիզոնի վրա նկատեց Ամերիկան, մի յերկիր, վորն, իհարկե, քիչ է հայտնի, վորտեղ, բանից դուրս է գալիս, վոր կան ժողովրդին շփոթեցնող ինչ-վոր ազատություններ և վորտեղ պետությունն ուրիշ մեթոդներով են կառավարում։ Բյուրոկրատը նկատեց Ամերիկան և վրդովվեց. այդ ի՞նչ յերկիր է, վո՞րտեղից լույս ընկավ այն, այդ ի՞նչ հիման վրա յե, վոր գոյություն ունի այն։ (Ընդհանուր ծիծաղ, ծափահարություններ)։ Իհարկե, այդ յերկիրը պատահաբար հայտնագործել եյին մի քանի դար առաջ, բայց մի՞թե չի կարելի այն նորից ծածկել, վորպեսզի նրա հոտն անգամ չմնա։ (Ընդհանուր ծիծաղ)։ Յեվ այս ասելով՝ մակագրեց. «Նորից ծածկել Ամերիկան»։ (Ընդհանուր ծիծաղ)։

Ինձ թվում է, վոր «Դոյչե Դիպլոմատիշ-Պոլիտիշե Կորրեսպոնդենցի» պարոնները, ինչպես ջրի յերկու կաթիլ, նման են Շչեդրինի բյուրոկրատին։ (Ընդհանուր



ծիծաղ, հավանության ծափահարություններ)։ ԽՍՀ Միությունը վաղուց է այդ պարոնների աչքի փուշը դարձել։ 19 տարի կանգնած է ԽՍՀՄ-ն իբրև մի փարոս, ազատագրության ոգով վարակելով ամբողջ աշխարհի բանվոր դասակարգին և կատաղություն առաջացնելով բանվոր դասակարգի թշնամիների մեջ։ Յեվ նա, այդ ԽՍՀՄ-ն, բանից դուրս է գալիս, վո՛չ միայն պարզապես գոյություն ունի, այլ նույնիսկ աճում է, և վո՛չ միայն աճում է, այլ նույնիսկ բարգավաճում է, և վո՛չ միայն բարգավաճում է, այլ նույնիսկ հորինում է նոր Սահմանադրության նախագիծ, մի նախագիծ, վորը մտքեր է գրգռում, նոր հույսեր է ներշնչում ճնշված դասակարգերին։ (Ծափահարություններ)։ Սրանից հետո ել ի՞նչպես չվրդովվեն գերմանական օֆիցիոզի պարոնները։ Այդ ի՞նչ յերկիր է, վայնասուն են բարձրացնում նրանք, այդ ի՞նչ հիման վրա յե, վոր գոյություն ունի նա (ընդհանուր ծիծաղ), և յեթե այն հայտնագործել են 1917 թվի հոկտեմբերին, ապա ինչո՞ւ չի կարելի այն նորից ծածկել, վորպեսզի նրա հոտն անգամ չմնա։ Յեվ այս ասելով վորոշեցին—

նորից ծածկել ԽՍՀՄ-ն, հայտարարել է լուր ամենքի, որ ԽՍՀՄ-ն, որպես պետություն, գոյություն չունի, որ ԽՍՀՄ-ն ոչ այլ ինչ է, յեթե ոչ հասարակ աշխարհագրական հասկացողություն: (Ընդհանուր ծիծաղ):

Մակագրություն անելով, որպեսզի նորից ծածկվի Ամերիկան, չչեդրինյան բյուրոկրատը, չնայելով իր ամբողջ բթամտությանը, այնուամենայնիվ գտավ իր մեջ իրականությունն ըմբռնելու տարրեր, ավելացնելով ինքն իրեն. «Բայց, կարծես թե, սույն այս բանն ինձնից չի կախված»: (Ուրախ ծիծաղի պոռթկում և բուռն ծափահարություններ): Ցես չգիտեմ, գերմանական ոֆիցիոզի պարոնների խելքը կհասնի՞ արդյոք գլխի ընկնելու, որ թղթի վրա այս կամ այն պետությունը «ծածկել» նրանք, ինարկե, կարող են, բայց, յեթե լրջորեն խոսենք, ապա «սույն այս բանը նրանցից կախված չե»... (Ուրախ ծիծաղի պոռթկում, բուռն ծափահարություններ):

Ինչ վերաբերում է այն բանին, որ ԽՍՀՄ-ի Սահմանադրությունն իբր թե հանդիսանում է դատարկ խոստում,



«պոտյոմկինյան գյուղ» և այլն, ապա յես կուզեյի վկայակոչել մի շարք հաստատված փաստեր, վորոնք իրենք են խոսում իրենց մասին:

1917 թվին ԽՍՀՄ-ի ժողովուրդները տապալեցին բուրժուազիային և հաստատեցին պրոլետարիատի դիկտատուրա, հաստատեցին Խորհրդային իշխանություն: Սա փաստ է և ոչ թե խոստում:

Այա, Խորհրդային իշխանությունը վերացրեց կալվածատերերի դասակարգը և նախկին կալվածատիրական, պետական ու վանքապատկան ավելի քան 150 միլիոն հեկտար հող հանձնեց գյուղացիներին, և այս— բացի այն հողերից, որ առաջներում էլ գյուղացիների ձեռքում եյին գտնվում: Սա փաստ է և ոչ թե խոստում:

Այա, Խորհրդային իշխանությունն եքսպրոպրիացիայի յենթարկեց կապիտալիստների դասակարգը, խլեց նրանցից բանկերը, գործարանները, յերկաթուղիները և արտադրության այլ գործիքերն ու միջոցները, դրանք սոցիալիստական սեփականություն հայտարարեց և այդ ձեռնարկությունների գլուխ կանգնեցրեց բանվոր դա-

սակարգի լավագույն մարդկանց: Սա փաստ է և ոչ թե խոստում: (Երկարատև ծափահարություններ):

Ապա, նոր սոցիալիստական հիմունքների վրա, նոր տեխնիկական բազայով կազմակերպելով արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը՝ Խորհրդային իշխանությունը հասավ այն բանին, որ ներկայումս ԽՍՀՄ-ի հողագործությունը մեկ և կես անգամ ավելի արտադրանք է տալիս, քան նախապատերազմյան ժամանակ, ինդուստրիան տալիս է յոթն անգամ ավելի արտադրանք, քան նախապատերազմյան ժամանակ, իսկ ժողովրդական եկամուտն աճել է չորս անգամ՝ համեմատած նախապատերազմյան ժամանակի հետ: Այս բոլորը փաստեր են և ոչ թե խոստումներ: (Երկարատև ծափահարություններ):

Ապա, Խորհրդային իշխանությունը վերացրեց գործազրկությունը, կիրառեց կյանքում աշխատանքի իրավունքը, հանգստի իրավունքը, կրթության իրավունքը, բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի համար ապահովեց լավագույն նյութական և կուլտուրական պայմաններ, ապահովեց ընդհանուր, ուղղակի և հավա-



սար ընտրական իրավունքի կենսագործումը՝ քաղաքացիների գաղտնի քվեարկության պայմաններում: Այս բոլորը փաստեր են և ոչ թե խոստումներ: (Երկարատև ծափահարություններ):

Վերջապես, ԽՍՀՄ-ն տվեց նոր Սահմանադրության նախագիծ, որը ո՛չ թե խոստում է, այլ այդ հանրածանոթ փաստերի գրանցում և օրենսդրական ամրապնդում, գրանցումն ու օրենսդրական ամրապնդումն այն բանի, ինչ որ արդեն ձեռք է բերված ու նվաճված:

Հարց է ծագում. այս բոլորից հետո ինչի յե հանգում գերմանական օֆիցիոզի պարոնների շաղակրատությունը «պոտյոմկինյան գյուղերի» մասին, եթե ոչ այն բանի, որ նրանք նպատակ են դրել թաքցնելու ժողովրդից ճշմարտությունը ԽՍՀՄ-ի մասին, մոլորեցնելու ժողովրդին, խաբելու նրան:

Սրանք են փաստերը: Իսկ փաստերը, ինչպես ասում են, համառ բան են: Գերմանական օֆիցիոզի պարոնները կարող են ասել՝ ավելի՛ վատ փաստերի համար: (Ընդհանուր ծիծաղ): Բայց այն ժամանակ նրանց կարելի յե պատասխանել ռուս-

տական հայտնի ասացվածքի այս խոսքերով՝ «Հիմարների համար օրենք չկա»։ (Ուրախ ծիծաղ, յերկարատև ծափահարություններ)։

Քննադատների յերրորդ խումբը հակառակ չէ ընդունելու Սահմանադրության նախագծի վորոշ արժանիքները, նա դրական յերևույթ է համարում այդ նախագիծը, բայց այդ խումբը՝ արի ու տես, վոր շատ է կասկածում, թե կարելի կլինի՞ արդյոք այդ Սահմանադրության մի շարք դրույթները կենսագործել, վորովհետև նա համոզված է, վոր այդ դրույթներն ընդհանրապես անիրագործելի յեն և պետք է մնան թղթի վրա։ Սրանք, մեղմ ասած, սկեպտիկներ են։ Դրանք, այդ սկեպտիկները, գոյություն ունեն բոլոր յերկիրներում։

Պետք է ասել, վոր մենք դրանց առաջին անգամը չէ, վոր հանդիպում ենք։ Յերբ բոլշևիկները 1917 թ. վերցնում եյին իշխանությունը, սկեպտիկներն ասում եյին. բոլշևիկները, թերևս, վատ մարդիկ չեն, բայց իշխանության գործը նրանց մոտ առաջ չի գնա, նրանք կտապալվեն։ Սակայն, իրականում դուրս յեկավ, վոր տա-



պալվեցին վո՛չ թե բոլշևիկները, այլ սկեպտիկները։

Քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի ժամանակ սկեպտիկների այդ խումբն ասում եր. Խորհրդային իշխանությունն, իհարկե, վատ բան չէ, բայց Դենիկինը Կոլչակի հետ մեկտեղ, պլյուս օտարերկրացիները, թերևս, կհաղթահարեն նրան։ Սակայն, իրականում դուրս յեկավ, վոր սկեպտիկներն այստեղ ել սխալվեցին իրենց հաշիվներում։

Յերբ Խորհրդային իշխանությունը հրապարակեց առաջին հնգամյա պլանը, սկեպտիկները նորից ասպարեզ յեկան, ասելով. հնգամյակը, իհարկե, լավ բան է, բայց նա հազիվ թե իրագործելի լինի. պետք է յենթադրել, վոր բոլշևիկների մոտ հնգամյակի գործը գլուխ չի գա։ Սակայն, փաստերը ցույց տվին, վոր սկեպտիկների բախտը նորից չբանեց—հնգամյա պլանն իրագործվեց չորս տարում։

Նույն բանը պետք է ասել նոր Սահմանադրության նախագծի և սկեպտիկների կողմից այդ Սահմանադրության քննադատության մասին։ Բավական եր հրապա-

րակել նախագիծը, որպեսզի քննադատների այդ խումբը նորից բեմ դուրս գար իր տաղտկալի սկեպսիսով, Սահմանադրության մի քանի դրույթների իրագործելիության վերաբերյալ իր կասկածներով: Ոչ մի հիմք չկա կասկածելու այն մասին, որ սկեպտիկները կտապալվեն նաև տվյալ դեպքում, կտապալվեն այժմ նույնպես, ինչպես քանից տապալվել են անցյալում:

Քննադատների չորրորդ խումբը, գրոհելով նոր Սահմանադրության նախագծի վրա, բնութագրում է այն որպես «տեղաշարժ դեպի աջ», որպես «հրաժարումն պրոլետարիատի դիկտատուրայից», որպես «բոլշևիկյան ռեժիմի վերացում»: «Բոլշևիկները դեպի աջ ճոճվեցին, այդ փաստ է»,— ասում են նրանք զանազան ձայներով: Այդ տեսակետից առանձնապես ջանք են գործ դնում մի քանի լեհական և մասամբ ամերիկյան թերթեր:

Ի՞նչ կարելի յե ասել այդ, թող ներվի ասել, քննադատների մասին:

Յեթե բանվոր դասակարգի դիկտատուրայի բազայի ընդարձակումը և դիկտատուրայի վերածումը հասարակության պե-



տական ղեկավարման ավելի ճկուն, հետեվաբար՝ ավելի հզոր սիստեմի՝ մեկնաբանվում է նրանց կողմից ոչ որպես բանվոր դասակարգի դիկտատուրայի ուժեղացում, այլ որպես նրա թուլացում կամ նույնիսկ որպես հրաժարումն դրանից, ապա թույլատրելի յե հարցնել. իսկ ընդհանրապես գիտե՞ն արդյոք այդ պարոնները, թե ինչ բան է բանվոր դասակարգի դիկտատուրան:

Յեթե սոցիալիզմի հաղթության օրենսդրական ամրապնդումը, ինդուստրացման կոլեկտիվացման ու դեմոկրատացման հաջողությունների օրենսդրական ամրապնդումը նրանց մոտ կոչվում է «տեղաշարժ դեպի աջ», ապա թույլատրելի յե հարցնել. իսկ ընդհանրապես գիտե՞ն արդյոք այդ պարոնները, թե ինչով է տարբերվում ձախն աջից: (Ընդհանուր ծիծաղ, ծափահարություններ):

Տարակույս չի կարող լինել, որ այդ պարոնները վերջնականապես խճճվել են Սահմանադրության նախագծի իրենց քննադատության մեջ և խճճվելով՝ շփոթել են աջը ձախի հետ:

Այդ առթիվ չի կարելի չհիշել ճորտ

տնային «աղջիկ» Պելագեյային — Գոգոլի «Մեռյալ հոգիներից»: Նա, ինչպես պատմում է Գոգոլը, հանձն առավ մի անգամ ճանապարհ ցույց տալ Չիչիկովի կառապան Սելիֆանին, բայց չկարողանալով տարբերել ճանապարհի աջ կողմը նրա ձախ կողմից, շփոթվեց և անհարմար դրության մեջ ընկավ: Պետք է ընդունել, որ մեր քննադատները լեհական թերթերից, չնայած նրանց ամբողջ ամբիցիային, այնուամենայնիվ հեռու չեն գնացել «Մեռյալ հոգիների» ճորտ տնային «աղջիկ» Պելագեյայի հասկացողության մակարդակից: (Ծափահարություններ): Եթե կհիշեք, կառապան Սելիֆանը հարկավոր համարեց շշպրել Պելագեյային՝ աջը ձախի հետ շփոթելու համար, ասելով նրան. «Էյ, դու, սևոտոտիկ... չգիտես, թե որտեղ է աջը, որտեղ՝ ձախը»: Ես կարծում եմ, որ հարկավոր էր հենց այդպես էլ շշպրել մեր ձախողակ քննադատներին, ասելով նրանց. Էյ, դուք, վա՛յ-քննադատներ... չգիտեք, թե որտեղ է աջը, որտեղ՝ ձախը: (Երկարատև ծափահարություններ):

Վերջապես, քննադատների մի խումբ ևս: Եթե նախորդ խումբը Սահմանադրու-



թյան նախագիծը մեղադրում է բանվոր դասակարգի դիկտատուրայից հրաժարվելու համար, ապա այս խումբը մեղադրում է նրան, ընդհակառակը, այն բանի համար, որ նա ոչինչ չի փոխում ԽՍՀՄ-ում գոյություն ունեցող դրության մեջ, որ նա ձեռք չի տալիս բանվոր դասակարգի դիկտատուրային, թույլ չի տալիս քաղաքական կուսակցությունների ազատություն և ուժի մեջ է պահում կոմունիստների կուսակցության ներկա ղեկավար դիրքը ԽՍՀՄ-ում: Ընդսմին քննադատների այդ խումբը գտնում է, որ ԽՍՀՄ-ում կուսակցությունների ազատության բացակայությունը դեմոկրատիզմի հիմքերի խախտման նշան է:

Ես պետք է խոստովանեմ, որ նոր Սահմանադրության նախագիծն իրոք ուժի մեջ է պահում բանվոր դասակարգի դիկտատուրայի ռեժիմը, ինչպես նաև անփոփոխ է թողնում Կոմունիստական կուսակցության ներկա ղեկավար դիրքը ԽՍՀՄ-ում: (Բուռն ծափահարություններ): Եթե հարգելի քննադատները դա Սահմանադրության նախագծի թերություն են համարում, ապա կարելի յե միայն ափսոսալ

այդ մասին: Իսկ մենք, բոլշևիկներս, դա համարում ենք Սահմանադրության նախագծի արժանիքը: (Բուռն ծափահարություններ):

Ինչ վերաբերում է տարբեր քաղաքական կուսակցությունների ազատությանը, ապա այստեղ մենք մի քիչ այլ հայացքներ ենք պաշտպանում: Կուսակցությունը դասակարգի մի մասն է, նրա առաջավոր մասը: Մի քանի կուսակցություններ, նշանակում է՝ նաև կուսակցությունների ազատություն, կարող են գոյություն ունենալ միմիայն այնպիսի հասարակության մեջ, որտեղ կան հակամարտ դասակարգեր, որոնց շահերը թշնամական են ու անհաշտ, որտեղ կան, ասենք, կապիտալիստներ ու բանվորներ, կալվածատերեր ու գյուղացիներ, կուլակներ ու չքավորություն և այլն: Բայց ԽՍՀՄ-ում չկան այլևս այնպիսի դասակարգեր, ինչպիսիք են կապիտալիստները, կալվածատերերը, կուլակները և այլն: ԽՍՀՄ-ում կա միայն երկու դասակարգ՝ բանվորներն ու գյուղացիները, որոնց շահերը ո՛չ միայն թշնամական չեն, այլ ընդհակառակը— բարեկամական են: Հետևաբար,



ԽՍՀՄ-ում հող չկա մի քանի կուսակցությունների գոյության համար, ուրեմն նշանակում է՝ նաև այդ կուսակցությունների ազատության համար: ԽՍՀՄ-ում հող կա միայն մի կուսակցության՝ Կոմունիստական կուսակցության համար: ԽՍՀՄ-ում կարող է գոյություն ունենալ միայն մի կուսակցություն— կոմունիստների կուսակցությունը, որը խիզախորեն և մինչև վերջը պաշտպանում է բանվորների ու գյուղացիների շահերը: Իսկ որ նա վատ չի պաշտպանում այդ դասակարգերի շահերը, սրանում հազիվ թե որևէ տարակույս լինի: (Բուռն ծափահարություններ):

Խոսում են դեմոկրատիայի մասին: Բայց ի՞նչ բան է դեմոկրատիան: Դեմոկրատիան կապիտալիստական երկրներում, որտեղ կան հակամարտ դասակարգեր, վերջին հաշվով դեմոկրատիա յե ուժեղների համար, դեմոկրատիա յե ունևոր փոքրամասնության համար: Դեմոկրատիան ԽՍՀՄ-ում, ընդհակառակը, դեմոկրատիա յե աշխատավորների համար, այսինքն՝ դեմոկրատիա յե բոլորի համար: Բայց դրանից հետևում է, որ դեմոկրատիզմի

հիմքերը խախտվում են վո՛չ թե ԽՍՀ Միության նոր Սահմանադրության նախագծի, այլ բուրժուական սահմանադրությունների կողմից: Ահա թե ինչու յես կարծում եմ, վոր ԽՍՀՄ-ի Սահմանադրությունը միակ մինչև վերջը դեմոկրատական սահմանադրությունն է աշխարհում:

Այսպես է բանը ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության նախագծի բուրժուական քննադատության վերաբերմամբ:

## V

## ՈՒՂՂՈՒՄՆԵՐ ՅԵՎ ԼՐԱՑՈՒՄՆԵՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԾԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Անցնենք Սահմանադրության նախագծի շուրջը յեղած ուղղումների և լրացումների հարցին, վորոնք մտցված են քաղաքացիների կողմից նախագծի համաժողովրդական քննարկման ժամանակ:

Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումը, ինչպես հայտնի յե, բավական նշանակալից քանակությամբ ուղղումներ և լրացումներ տվեց: Դրանք



բոլորը հրապարակված են խորհրդային մամուլում: Նկատի ունենալով ուղղումների մեծ բազմազանությունը և նրանց վոչ միատեսակ արժեքը, հարկ կլիներ, իմ կարծիքով, բաժանել դրանք յերեք կատեգորիայի:

Առաջին կատեգորիայի ուղղումների տարբերիչ գիծն այն է, վոր դրանք խոսում են վո՛չ թե Սահմանադրության հարցերի մասին, այլ ապագա օրենսդրական մարմինների ընթացիկ օրենսդրական աշխատանքի հարցերի մասին: Ապահովագրման առանձին հարցեր, կոլտնտեսային շինարարության մի քանի հարցեր, արդյունաբերական շինարարության մի քանի հարցեր, ֆինանսական գործի հարցեր,— սրանք են այդ ուղղումների թեմաները: Ինչպես յերևում է, այս ուղղումների հեղինակները չեն պարզել իրենց համար սահմանադրական հարցերի և ընթացիկ օրենսդրության հարցերի միջև յեղած տարբերությունը: Հենց այդ պատճառով ել նրանք ջանք են գործ դնում Սահմանադրության մեջ խցկել, վորքան կարելի յե, շատ օրենքներ, գործը տանելով այն ուղղությամբ, վորպեսզի Սահմանադրությունը վերածվի

որենքների հավաքածուի նման մի բան: Բայց Սահմանադրությունն որենքների հավաքածու չէ: Սահմանադրությունը հիմնական որենք է, և միմիայն հիմնական որենք: Սահմանադրությունը չի բացառում, այլ յենթադրում է ապագա որենսդրական մարմինների ընթացիկ որենսդրական աշխատանքը: Սահմանադրությունն իրավաբանական հիմք է տալիս այդպիսի մարմինների ապագա որենսդրական գործունեության համար: Այս պատճառով այդ տեսակի ուղղումներն ու լրացումները, վորպես Սահմանադրության հետ ուղղակի առնչություն չունեցող, իմ կարծիքով, պետք է ուղղվեն յերկրի ապագա որենսդրական մարմիններին:

Յերկրորդ կատեգորիային պետք է վերագրել այնպիսի ուղղումներն ու լրացումները, վորոնք փորձում են Սահմանադրության մեջ պատմական տեղեկանքների տարրեր մտցնել կամ դեկլարացիայի տարրեր այն մասին, ինչի վոր դեռ չի հասել Խորհրդային իշխանությունը և ինչի վոր նա պետք է հասնի ապագայում: Նշել Սահմանադրության մեջ, թե ինչպիսի դժվարություններ են հաղթահարել յերկա-



րատև տարիների ընթացքում կուսակցությունը, բանվոր դասակարգն ու բոլոր աշխատավորները սոցիալիզմի հաղթության համար մղվող կռվում, մատնանշել Սահմանադրության մեջ խորհրդային շարժման վերջնական նպատակը, այն է՝ լիակատար կոմունիստական հասարակության կառուցումը,— սրանք են այդ ուղղումների թեմաները, վորոնք կրկնվում են զանազան վարիացիաներով: Յես կարծում եմ, վոր Սահմանադրության հետ ուղղակի առնչություն չունեցող այդպիսի ուղղումներն ու լրացումները նույնպես պետք է մի կողմ դրվեն: Սահմանադրությունը գրանցումն և որենսդրական ամրապնդումն է այն նվաճումների, վորոնք արդեն ձեռք են բերված և ապահովված են: Յեթե մենք չենք ուզում աղավաղել Սահմանադրության այս հիմնական բնույթը, մենք չպետք է այն լցնենք պատմական տեղեկանքներով անցյալի մասին կամ դեկլարացիաներով ԽՍՀՄ-ի աշխատավորների ապագա նվաճումների մասին: Այդ գործի համար մենք ուրիշ ուղիներ և ուրիշ փաստաթղթեր ունենք:

Վերջապես, յերրորդ կատեգորիային

պետք ե վերագրել այնպիսի ուղղումներն ու լրացումները, վորոնք ուղղակի առնչություն ունեն Սահմանադրության նախագծի հետ:

Այս կատեգորիայի ուղղումների նշանակալից մասը խմբագրական բնույթ ունի: Այս պատճառով դրանք կարելի յեր հանձնել ներկա Համագումարի Խմբագրական հանձնաժողովին, վորը, յես կարծում եմ, կստեղծի Համագումարը, հանձնարարելով նրան նոր Սահմանադրության տեքստի վերջնական խմբագրությունը սահմանելը:

Ինչ վերաբերում ե յերրորդ կատեգորիայի մնացած ուղղումներին, ապա դրանք ավելի եյական նշանակություն ունեն, և նրանց մասին, ըստիս, հարկ կլինի մի քանի խոսք ասել այստեղ:

1) Ամենից առաջ Սահմանադրության առաջին հոդվածի վերաբերյալ ուղղումների մասին: Կա չորս ուղղում: Վոմանք առաջարկում են «բանվորների և գյուղացիների պետություն» բառերի տեղ ասել՝ «աշխատավորների պետություն»: Ուրիշներն առաջարկում են՝ «բանվորների և գյուղացիների պետություն» բառերին ավելացնել՝ «և աշխատավոր ինտելիգենցիա-



յի»: Յերրորդներն առաջարկում են «բանվորների և գյուղացիների պետություն» բառերի փոխարեն ասել՝ «ԽՍՀՄ-ի տերիտորիայում բնակվող բոլոր ռասաների և ազգությունների պետություն»: Չորրորդներն առաջարկում են «գյուղացիների» բառը փոխարինել՝ «կոլտնտեսականների» բառով կամ՝ «սոցիալիստական հողագործության աշխատավորների» բառերով:

Հարկ կա՞ արդյոք ընդունել այս ուղղումները: Յես կարծում եմ, վոր հարկ չկա:

Ինչի՞ մասին ե խոսում Սահմանադրության նախագծի առաջին հոդվածը: Նա խոսում ե խորհրդային հասարակության դասակարգային կազմի մասին: Կարո՞ղ ենք արդյոք մենք, մարքսիստներս, զանց առնել Սահմանադրության մեջ մեր հասարակության դասակարգային կազմի հարցը: Վո՛չ, չենք կարող: Խորհրդային հասարակությունը բաղկացած ե, ինչպես հայտնի յե, յերկու դասակարգերից, բանվորներից ու գյուղացիներից: Սահմանադրության նախագծի առաջին հոդվածը հենց սրա մասին էլ խոսում ե: Հետևաբար, Սահմանադրության նախագծի առաջին հոդվածը

ճիշտ է արտացոլում մեր հասարակության դասակարգային կազմը։ Կարող են հարցնել՝ իսկ աշխատավոր ինտելիգենցիա՞ն։ Ինտելիգենցիան յերբեք դասակարգ չի յեղել և չի կարող լինել,— նա յեղել է և մնում է միջնախավ, վոր իր անդամներին հավաքագրում է հասարակության բոլոր դասակարգերից։ Հին ժամանակ ինտելիգենցիան իր անդամներին հավաքագրում եր ազնվականներից, բուրժուազիայից, մասամբ գյուղացիներից և միայն ամենաաննշան չափով բանվորներից։ Մեր խորհրդային ժամանակում ինտելիգենցիան իր անդամներին հավաքագրում է գլխավորապես բանվորներից ու գյուղացիներից։ Բայց ինչպես էլ վոր նա հավաքագրվի և ինչ բնույթ էլ վոր կրի, ինտելիգենցիան այնուամենայնիվ միջնախավ է և վոչ թե դասակարգ։

Չի՞ դիպչում արդյոք այս հանգամանքն աշխատավոր ինտելիգենցիայի իրավունքներին։ Ամենևի՛ն։ Սահմանադրության նախագծի առաջին հոդվածը խոսում է վո՛չ թե խորհրդային հասարակության տարբեր շերտերի իրավունքների մասին, այլ այդ հասարակության դասակարգային կազմի



մասին։ Խորհրդային հասարակության տարբեր շերտերի իրավունքների մասին, այդ թվում՝ աշխատավոր ինտելիգենցիայի իրավունքների մասին, խոսվում է գլխավորապես Սահմանադրության նախագծի տասներորդ և տասնմեկերորդ գլուխներում։ Այդ գլուխներից պարզ յերևում է, վոր բանվորները, գյուղացիները և աշխատավոր ինտելիգենցիան միանգամայն իրավահավասար են յերկրի տնտեսական, քաղաքական, հասարակական և կուլտուրական կյանքի բոլոր վոլորտներում։ Հետևաբար, աշխատավոր ինտելիգենցիայի իրավունքներին դիպչելու մասին խոսք անգամ չի կարող լինել։

Նույն բանը պետք է ասել ԽՍՀՄ-ի կազմի մեջ մտնող ազգերի և ռասաների մասին։ Սահմանադրության նախագծի յերկրորդ գլխում արդեն ասված է, վոր ԽՍՀՄ-ն իրավահավասար ազգերի ազատ միություն է։ Արժե՞ արդյոք կրկնել այդ ֆորմուլան Սահմանադրության նախագծի առաջին հոդվածում, վորը խոսում է վո՛չ թե խորհրդային հասարակության ազգային կազմի, այլ նրա դասակարգային կազմի մասին։ Պարզ է, վոր չարժե։ Ինչ վերաբեր-

րում է ԽՍՀՄ-ի կազմի մեջ մտնող ազգերի և ռասաների իրավունքներին, ապա դրանց մասին խոսվում է Սահմանադրության Նախագծի յերկրորդ, տասերորդ և տասնմեկերորդ գլուխներում: Այդ գլուխներից պարզ յերևում է, վոր ԽՍՀՄ-ի ազգերն ու ռասաները միատեսակ իրավունքներ են վայելում յերկրի տնտեսական, քաղաքական, հասարակական ու կուլտուրական կյանքի բոլոր վոլորտներում: Հետևաբար, խոսք անգամ չի կարող լինել ազգային իրավունքներին դիպչելու մասին:

Նմանապես սխալ կլիներ «գյուղացի» բառը փոխարինել «կոլտնտեսական» բառով, կամ «սոցիալիստական հողագործության աշխատավոր» բառերով: Նախ՝ գյուղացիների մեջ, բացի կոլտնտեսականներից, կան դեռևս մի միլիոնից ավելի վոչ-կոլտնտեսականների տնտեսություններ: Ինչպես վարվել նրանց հետ: Արդյոք այդ ուղղման հեղինակները չե՞ն մտածում հաշվից դուրս գցել նրանց: Այդ խելացի չէր լինի: Յերկրորդ՝ յեթե գյուղացիների մեծամասնությունն սկսել է կոլխոզային տնտեսություն վարել, ապա այդ դեռ չի նշանակում, վոր նա դադարել է գյուղա-



ցիություն լինելուց, վոր նա չունի այլևս իր անձնական տնտեսությունը, սեփական բակը և այլն: Յերրորդ՝ այն ժամանակ կարիք կլիներ «բանվոր» բառը նույնպես փոխարինել «սոցիալիստական արդյունաբերության աշխատավոր» բառերով, վորը, սակայն, ուղղման հեղինակները, չգիտես ինչ պատճառով, չեն առաջարկում: Վերջապես, մի՞թե մեզ մոտ արդեն անհետացել են բանվորների դասակարգը և գյուղացիների դասակարգը: Իսկ յեթե նրանք չեն անհետացել, ապա արժե՞, արդյոք, ջնջել բառարանից նրանց համար սահմանված անունները: Ուղղման հեղինակներն, ըստ յերևույթին, աչքի առաջ ունեն վո՛չ թե ներկա, այլ ապագա հասարակությունը, յերբ այլևս դասակարգեր չեն լինի և յերբ բանվորներն ու գյուղացիները կվերածվեն միասնական կոմունիստական հասարակության աշխատավորների: Հետևաբար, նրանք բացահայտորեն առաջ են վազում: Բայց Սահմանադրությունը կազմելիս պետք է յելնել վո՛չ թե ապագայից, այլ ներկայից, նրանից, ինչ վոր արդեն կա: Սահմանադրությունը չի կարող և չպետք է առաջ վազի:

2) Այնուհետև գալիս է Սահմանադրության նախագծի տասնյոթերորդ հոդվածի վերաբերյալ ուղղումը: Ուղղումն այն է, որ առաջարկում են Սահմանադրության նախագծից բոլորովին դուրս գցել տասնյոթերորդ հոդվածը, որը խոսում է Միութենական հանրապետությունների համար ԽՍՀՄ-ից ազատորեն դուրս գալու իրավունք պահպանելու մասին: Ես կարծում եմ, որ այդ առաջարկը ճիշտ չէ, ուստի և չպետք է ընդունվի Համագումարի կողմից: ԽՍՀՄ-ն իրավահավասար Միութենական հանրապետությունների ազատակամ միություն է: Սահմանադրությունից հանել ԽՍՀ Միությունից ազատորեն դուրս գալու իրավունքի վերաբերյալ հոդվածը, նշանակում է խախտել այդ Միության կամավոր բնույթը: Կարո՞ղ ենք մենք դիմել այդ քայլին: Ես կարծում եմ, որ մենք չենք կարող և չպետք է դիմենք այդ քայլին: Ասում են, որ ԽՍՀՄ-ում չկա ոչ մի հանրապետություն, որը ցանկանար դուրս գալ ԽՍՀՄ-ի կազմից, որ այդ նկատառումով տասնյոթերորդ հոդվածը գործնական նշանակություն չունի: Որ



մեզ մոտ չկա ոչ մի հանրապետություն, որը ցանկանար դուրս գալ ԽՍՀՄ-ի կազմից, այդ, իհարկե, ճիշտ է: Բայց դրանից բնավ չի հետեվում, որ մենք Սահմանադրության մեջ չպետք է ֆիքսացիայի ենթարկենք Միութենական հանրապետությունների իրավունքը՝ ազատորեն դուրս գալու ԽՍՀ Միությունից: ԽՍՀՄ-ում չկա նաև այնպիսի Միութենական հանրապետություն, որը ցանկանար ճնշել մի այլ Միութենական հանրապետության: Բայց դրանից բնավ չի հետևում, որ ԽՍՀՄ-ի Սահմանադրությունից պետք է դուրս հանվի Միութենական հանրապետությունների իրավունքների հավասարության մասին խոսող հոդվածը:

3) Ապա առաջարկ կա՝ Սահմանադրության նախագծի չորրորդ գլուխը լրացնել մի նոր հոդվածով, որի բովանդակությունն այն է, թե ավտոնոմ խորհրդային սոցիալիստական հանրապետությունները, տնտեսական և կուլտուրական զարգացման համապատասխան մակարդակի հասնելիս, կարող են վերափոխվել միութենական խորհրդային սոցիալիստական հանրապե-

տությունների: Կարելի՞ է արդյոք ընդունել այդ առաջարկը: Ես կարծում եմ, որ չպետք է ընդունել այն: Այն ճիշտ չէ ո՛չ միայն իր բովանդակությամբ, այլև իր պատճառաբանություններով: Չի կարելի ավտոնոմ հանրապետությունների փոխադրումը միութենական հանրապետությունների կարգը՝ պատճառաբանել նրանց տնտեսական ու կուլտուրական հասունությամբ, ինչպես նաև չի կարելի այս կամ այն հանրապետությունն ավտոնոմ հանրապետությունների ցուցակում թողնելը պատճառաբանել նրա տնտեսական և կուլտուրական հետամնացությամբ: Դա կլիներ ոչ մարքսիստական, ոչ լենինյան մոտեցում: Օրինակ, Թաթարական Հանրապետությունն ավտոնոմ է մնում, իսկ Ղազախական Հանրապետությունը դառնում է միութենական, բայց այդ դեռ չի նշանակում, որ Ղազախական Հանրապետությունը կուլտուրական ու տնտեսական զարգացման տեսակետից ավելի բարձր է կանգնած, քան Թաթարական Հանրապետությունը: Բոլորովին ընդհակառակը: Նույնը կարելի է ասել նաև, օրինակ, Մերձվոլգյան Գերմանացիների Ավտոնոմ



Հանրապետության և Կիրգիզական Միութենական Հանրապետության մասին, որոնցից առաջինը կուլտուրական ու տնտեսական տեսակետից ավելի բարձր է, քան յերկրորդը, թեպետև մնում է ավտոնոմ հանրապետություն:

Որո՞նք են այն հատկանիշները, որոնց առկայությունը հիմք է տալիս ավտոնոմ հանրապետությունները միութենական հանրապետությունների կարգը փոխադրելու:

Դրանք, այդ հատկանիշները, յերեք են:

Նախ՝ անհրաժեշտ է, որ հանրապետությունը ծայրերկրային լինի, ամեն կողմից շրջապատված չլինի ՍՍՀՄ-ի տերիտորիայով: Ինչո՞ւ: Որովհետև յեթե Միութենական հանրապետության իրավունք է վերապահվում դուրս գալու ՍՍՀ Միությունից, ապա անհրաժեշտ է, որ Միութենական դարձած այդ հանրապետությունը հնարավորություն ունենա տրամաբանորեն ու փաստորեն հարց դնել իր դուրս գալու մասին ՍՍՀՄ-ից: Իսկ այդպիսի հարց կարող է դնել միմիայն այնպիսի հանրապետություն, որը, ասենք, սահմանակից է վորևէ օտար պետության և, հետևաբար, ամեն կողմից շրջապատված չէ

ԽՍՀՄ-ի տերիտորիայով: Իհարկե, մեզ մոտ չկան այնպիսի հանրապետություններ, վորոնք փաստորեն հարց դնեյին ԽՍՀ Միությունից դուրս գալու մասին: Բայց քանի վոր Միութենական հանրապետության իրավունք ե վերապահված դուրս գալու ԽՍՀՄ-ից, ապա հարկավոր ե գործն այնպես դնել, վոր այդ իրավունքը դատարկ և անիմաստ թղթի կտոր չդառնա: Վերցնենք, որինակ, Բաշկիրական կամ Թաթարական Հանրապետությունը: Ենթադրենք, թե այդ ավտոնոմ հանրապետություններն անց ենք կացրել միութենական հանրապետությունների կարգը: Կկարողանայի՞ն արդյոք նրանք տրամաբանորեն կամ փաստորեն հարց դնել իրենց դուրս գալու մասին ԽՍՀՄ-ից: Վո՛չ, չեյին կարող: Ինչո՞ւ: Վորովհետև նրանք բոլոր կողմերից շրջապատված են խորհրդային հանրապետություններով ու մարզերով և նրանք, իսկապես ասած, տեղ չունեն ԽՍՀՄ-ի կազմից դուրս գալու: (Ընդհանուր ծիծաղ, ծափահարություններ): Այդ պատճառով ել այդպիսի հանրապետությունները միութենական հան-



րապետությունների կարգն անցկացնելը սխալ կլիներ:

Երկրորդ, անհրաժեշտ ե, վորպեսզի այն ազգությունը, վոր խորհրդային հանրապետությանն իր անունն ե տվել, քիչ թե շատ կոմպակտ մեծամասնություն ներկայացնի հանրապետության մեջ: Վերցնենք, որինակ, Ղրիմի Ավտոնոմ Հանրապետությունը: Նա ծայրամասային հանրապետություն ե, բայց Ղրիմի թաթարները մեծամասնություն չունեն այդ հանրապետության մեջ, ընդհակառակը, նրանք այնտեղ փոքրամասնություն են ներկայացնում: Հետևաբար, սխալ և անտրամաբանական կլիներ Ղրիմի Հանրապետությունը միութենական հանրապետությունների կարգն անցկացնել:

Երրորդ, անհրաժեշտ ե, վորպեսզի հանրապետությունը շատ ել փոքր չլինի իր բնակչության քանակության իմաստով, վորպեսզի նա, ասենք, ունենա վոչ պակաս, այլ գոնե մի միլիոնից ավելի բնակչություն: Ինչո՞ւ: Վորովհետև սխալ կլիներ յենթադրել, թե մանր խորհրդային հանրապետությունը, վոր բնակչության նվազագույն քանակություն և անչափ բա-

նակ ունի, կարող կլիներ պետական անկախ գոյության հույս ունենալ: Հազիվ թե կարելի յե կասկածել այն մասին, վոր իմպերիալիստական գիշատիչներն՝ իսկույն ևեթ իրենց ձեռքը կգցեյին այն:

Յես կարծում եմ, վոր առանց այս յերեք ոբյեկտիվ հատկանիշների առկայության, սխալ կլիներ ներկա պատմական մոմենտում հարց դնել այս կամ այն ավտոնոմ հանրապետությունը միութենական հանրապետությունների կարգն անցկացնելու մասին:

4) Այնուհետև առաջարկում են 22-րդ, 23-րդ, 24-րդ, 25-րդ, 26-րդ, 27-րդ, 28-րդ և 29-րդ հոդվածներում ջնջել միութենական հանրապետությունների վարչական-տերիտորիալ բաժանման մանրամասն թվարկումը յերկրների և մարզերի: Յես կարծում եմ, վոր այդ առաջարկությունը նույնպես անընդունելի յե: ԽՍՀՄ-ում կան մարդիկ, վորոնք պատրաստ են մեծ սիրով և անխոնջ կերպով ձեվել-փոխել յերկրներն ու մարզերը, դրանով խառնաշփոթություն և անվստահություն մտցնելով աշխատանքի մեջ: Սահմանադրության նախագիծն այդ մարդկանց համար սանձ է



ստեղծում: Յեվ այդ շատ լավ է, վորովհետև այստեղ, ինչպես և շատ ուրիշ բաներում, մեզ մոտ պահանջվում է վստահության մթնոլորտ, պահանջվում է կայունություն, պարզություն:

5) Հինգերորդ ուղղումը վերաբերում է 33-րդ հոդվածին: Աննպատակահարմար են համարում յերկու պալատների ստեղծումը և առաջարկում են վոչնչացնել Ազգությունների Խորհուրդը: Յես կարծում եմ, վոր այդ ուղղումը նույնպես ճիշտ չէ: Միապալատային սիստեմն ավելի լավ կլիներ, քան յերկպալատայինը, յեթե ԽՍՀՄ-ն միանական ազգային պետություն ներկայացներ: Բայց ԽՍՀՄ-ն միանական ազգային պետություն չէ: ԽՍՀՄ-ն, ինչպես հայտնի յե, բազմազգի պետություն է: Մեզ մոտ կա գերագույն մարմին, վորտեղ ներկայացված են ԽՍՀՄ-ի բոլոր աշխատավորների ընդհանուր շահերը՝ անկախ նրանց ազգությունից: Դա—Միության Խորհուրդն է: Բայց ԽՍՀ Միության ազգությունները, բացի ընդհանուր շահերից, ունեն նաև իրենց առանձին, յուրահատուկ շահերը, վորոնք կապված են նրանց ազգային առանձնահատկությունների հետ:

Կարելի՞ յէ, արդյոք, արհամարհել այդ յուրահատուկ շահերը: Ո՛չ, չի կարելի: Պե՞տք է արդյոք հատուկ գերագույն մարմին, որն արտացոլեր հենց այդ յուրահատուկ շահերը: Անպայման պետք է: Կասկած չի կարող լինել, որ առանց այդպիսի մարմնի անհնարին կլիներ այնպիսի բազմազգ պետություն կառավարելը, ինչպիսին ԽՍՀՄ-ն է: Այդպիսի մարմին է հանդիսանում յերկրորդ պալատը, ԽՍՀՄ-ի Ազգությունների Խորհուրդը:

Մատնանշում են յեվրոպական և ամերիկյան պետությունների պառլամենտական պատմությունը, մատնանշում են այն, որ յերկպալատային սիստեմն այդ յերկրներում միայն մինուսներ է տվել, որ յերկրորդ պալատը սովորաբար այլասերվում դառնում է ռեակցիայի կենտրոն և արգելակ առաջընթաց շարժման դեմ: Այս բոլորը ճիշտ է: Բայց դա տեղի յէ ունենում այն պատճառով, որ այդ յերկիրներում պալատների միջև հավասարություն չկա: Ինչպես հայտնի յէ, յերկրորդ պալատին հաճախ ավելի իրավունքներ են տալիս, քան առաջինին, և, այնուհետև, որպես կանոն, յերկրորդ պալատը կազմա-



կերպվում է ոչ-դեմոկրատական ճանապարհով, հաճախ նրա անդամներին վերևից նշանակելու ճանապարհով: Անկասկած է, որ այդ մինուսները չեն լինի, յեթե հավասարություն մտցնենք պալատների միջև և յերկրորդ պալատը կազմակերպենք նույնպես դեմոկրատականորեն, ինչպես և առաջինը:

6) Այնուհետև առաջարկում են Սահմանադրության նախագծի մի լրացում, որը պահանջում է յերկու պալատների անդամների քանակի հավասարեցում: Յես կարծում եմ, որ այս առաջարկը կարելի կլիներ ընդունել: Դա, իմ կարծիքով, տալիս է ակներև քաղաքական պլյուսներ, որովհետև ընդգծում է պալատների հավասարությունը:

7) Այնուհետև գալիս է Սահմանադրության նախագծի մի լրացում, որի համաձայն առաջարկվում է Ազգությունների Խորհրդի, ինչպես և Միության Խորհրդի պատգամավորներին ընտրել ուղղակի ընտրությունների միջոցով: Յես կարծում եմ, որ այս առաջարկը նույնպես կարելի կլիներ ընդունել: Ճիշտ է, դա կարող է ընտրությունների ժամանակ որոշ տեխնիկա-

կան անհարմարություններ ստեղծել: Բայց դրա փոխարեն նա կտա քաղաքական մեծ շահում, որովհետև նա պետք է բարձրացնի Ազգությունների Խորհրդի հեղինակությունը:

8) Այնուհետև գալիս է 40-րդ հոդվածի լրացումը, որի համաձայն առաջարկվում է Գերագույն Խորհրդի Նախագահությանն իրավունք վերապահել հրատարակելու ժամանակավոր օրենսդրական ակտեր: Ես կարծում եմ, որ այս լրացումը ճիշտ չէ և Համագումարի կողմից չպետք է ընդունվի: Հարկավոր է, վերջապես, վերջ դնել այն դրությանը, երբ օրենսդրություն է անում ո՛չ թե որևէ մի մարմին, այլ մարմինների մի ամբողջ շարք: Այդպիսի դրությունը հակասում է օրենքների կայունության սկզբունքին: Իսկ օրենքների կայունությունն այժմ մեզ պետք է ավելի, քան երբևէ: ԽՍՀՄ-ում օրենսդիր իշխանությունը պետք է իրականացվի միայն մի մարմնի, այն է՝ ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի կողմից:

9) Այնուհետև Սահմանադրության նախագծի 48-րդ հոդվածի նկատմամբ առաջարկում են մի լրացում, որի համաձայն



պահանջում են, որպեսզի ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի Նախագահության Նախագահն ընտրվի ո՛չ թե ԽՍՀՄի Գերագույն Խորհրդի, այլ երկրի ամբողջ բնակչության կողմից: Ես կարծում եմ, որ այս լրացումը ճիշտ չէ, որովհետև չի համապատասխանում մեր Սահմանադրության ոգուն: Ըստ մեր Սահմանադրության սիստեմի՝ ԽՍՀՄ-ում չպետք է լինի ամբողջ բնակչության կողմից, Գերագույն Խորհրդի հետ միահավասար, ընտրվող միանձնյա Նախագահ, որը կարողանար իրեն հակադրել Գերագույն Խորհրդին: ԽՍՀՄ-ում նախագահը կոլեգիալ է, դա—Գերագույն Խորհրդի Նախագահությունն է՝ ներառյալ նաև Գերագույն Խորհրդի Նախագահության Նախագահին, որին ընտրում է ո՛չ թե ամբողջ բնակչությունը, այլ Գերագույն Խորհուրդը, և որը հաշվետու է Գերագույն Խորհրդին: Պատմության փորձը ցույց է տալիս, որ գերագույն մարմինների այսպիսի կառուցումն ամենից ավելի դեմոկրատական է, որն ապահովում է երկիրն անցանկալի պատահականություններից:

10) Այնուհետև գալիս է մի ուղղում

նույն այդ 48-րդ հոդվածի նկատմամբ: Պա-
հանջում է. ավելացնել ՍՍՀՄ-ի Գերագույն
Խորհրդի Նախագահության նախագահի
տեղակալների քանակը մինչև 11, այն հաշ-
վով, որպեսզի յուրաքանչյուր Միութե-
նական հանրապետությունից մի տեղակալ
լինի: Ես կարծում եմ, որ այս ուղ-
ղումը կարելի կլիներ ընդունել, որով-
հետև դա լավացնում է գործը և կարող է
միայն ամրապնդել ՍՍՀՄ-ի Գերագույն
Խորհրդի Նախագահության հեղինակու-
թյունը:

11) Այնուհետև գալիս է ուղղում 77-րդ
հոդվածի վերաբերյալ: Դա պահանջում է
կազմակերպել մի նոր համամիութենական
ժողովրդական կոմիսարիատ՝ Պաշտպանու-
թյան Արդյունաբերության Ժողկոմատ:
Ես կարծում եմ, որ այս ուղղումը նույն-
պես հարկավոր է ընդունել (ծափահարու-
թյուններ), որովհետև հասել է ժամա-
նակն այն բանի համար, որ առանձնա-
ցնենք մեր պաշտպանության արդյունաբե-
րությունը և համապատասխան ժողկոմա-
տային ձևավորում տանք նրան: Ինձ թը-
վում է, որ դա միայն կարող է բարելա-
վել մեր յերկրի պաշտպանության գործը:



12) Այնուհետև գալիս է Սահմանադրու-
թյան նախագծի 124-րդ հոդվածի վերա-
բերյալ մի ուղղում, որը պահանջում է
փոփոխել այդ հոդվածն այն ուղղու-
թյամբ, որպեսզի արգելվի կրոնական ծե-
սերի կատարումը: Ես կարծում եմ, որ
այս ուղղումը հարկավոր է մերժել, որ-
պես մեր Սահմանադրության ոգուն չը-
համապատասխանող:

13) Վերջապես դարձյալ մեկ ուղղում,
որն ավելի կամ պակաս էական բնույթ
ունի: Ես խոսում եմ Սահմանադրության
նախագծի 135-րդ հոդվածի վերաբերյալ
ուղղման մասին: Այդ ուղղումն առաջար-
կում է ընտրական իրավունքներից զրկել
պաշտամունքի սպասավորներին, նախկին
սպիտակ-գվարդիականներին, բոլոր այն
նախկին մարդկանց ու անձնավորություն-
ներին, որոնք հանրօգուտ աշխատանքով
չեն զբաղվում, կամ թե, համենայն դեպս,
—սահմանափակել այդ կատեգորիայի անձ-
նավորությունների ընտրական իրավունք-
ները, տալով նրանց միայն ընտրելու, բայց
ոչ ընտրվելու իրավունք: Ես կարծում
եմ, որ այս ուղղումը նույնպես պետք է
մերժվի: Խորհրդային իշխանությունը զը-

աշխատավորական և շահագործող տարրերին ընտրական իրավունքներից զրկել է ո՛չ թե հավիտենապես, այլ ժամանակավորապես, մինչև որոշ ժամանակաշրջան: Կար ժամանակ, երբ այդ տարրերը բացահայտ պատերազմ էին մղում ժողովրդի դեմ և հակազդում էին խորհրդային օրենքներին: Նրանց ընտրական իրավունքից զրկելու վերաբերյալ խորհրդային օրենքը Խորհրդային իշխանության պատասխանն էր այդ հակազդեցությանը: Այդ շրջանից քիչ ժամանակ չի անցել: Անցած ժամանակաշրջանում մենք հասանք այն բանին, որ շահագործող դասակարգերը ոչնչացված են, իսկ Խորհրդային իշխանությունը դարձել է անհաղթելի ուժ: Արդյոք չի՞ հասել ժամանակը վերանայելու այդ օրենքը: Ես կարծում եմ, որ ժամանակը հասել է: Ասում են, թե դա վըտանգավոր է, քանի որ երկրի գերագույն մարմինների մեջ կարող են սողոսկել Խորհրդային իշխանության թշնամի տարրեր, նախկին սպիտակ-գվարդիականներից, կուլակներից, տերտերներից ոմանք և այլն: Բայց ինչպես այստեղ ի՞նչ կա վախենալու: Գայլերից վախեցողն անտառ



չպետք է գնա: (Ուրախ աշխուժություն դահլիճում, բուռն ծափահարություններ): Նախ՝ Խորհրդային իշխանության թշնամի չեն ոչ բոլոր նախկին կուլակները, սպիտակ-գվարդիականները կամ տերտերները: Երկրորդ՝ եթե ժողովուրդը տեղ-տեղ թշնամի մարդիկ ընտրի էլ, ապա այդ կնշանակի, որ մեր ագիտացիոն աշխատանքը չափից դուրս վատ է դրված և որ մենք լիովին արժանի էինք այդպիսի խայտառակության. իսկ եթե մեր ագիտացիոն աշխատանքը բոլշևիկորեն ընթանա, ապա ժողովուրդը չի թողնի, որ իր գերագույն մարմինների մեջ թշնամի մարդիկ մտնեն: Նշանակում է՝ հարկավոր է աշխատել և ոչ թե նվնվալ (բուռն ծափահարություններ), հարկավոր է աշխատել և ոչ թե սպասել, որ ամեն ինչ տրամադրվի պատրաստի ձևով վարչական կարգադրությունների կարգով: Լենինը դեռ 1919 թվին ասում էր, որ հեռու չէ այն ժամանակը, երբ Խորհրդային իշխանությունն օգտակար կըհամարի մտցնելու ընդհանուր ընտրական իրավունք՝ առանց որևէ սահմանափակման: Ուշադրություն դարձրեք՝ առանց որևէ սահմանափակման: Այդ նա ասել է

այն ժամանակ, երբ օտարերկրյա ռազմական ինտերվենցիան դեռ վերացված չէր, իսկ մեր արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը սոսկալի դրության մեջ էին գտնվում: Այդ ժամանակից ի վեր անցել է արդեն 17 տարի: Ժամանակը չէ՞ արդյոք, ընկերնե՛ր, կատարելու Լենինի ցուցումը: Ցես կարծում եմ, որ ժամանակն է:

Ահա թե ինչ էր ասում Լենինը 1919 թվին «ՌԿ(բ)Կ ծրագրի նախագիծ» իր աշխատության մեջ: Թույլ տվեք կարդալ.

«Անցողիկ պատմական կարիքները սխալ կերպով ընդհանրացնելուց խուսափելու համար՝ ՌԿ(բ)Կ պետք է պարզաբանի աշխատավոր մասսաներին, որ քաղաքացիների մի մասին ընտրական իրավունքներից զրկելը Խորհրդային հանրապետության մեջ բնավ չի վերաբերում,— ինչպես այդ լինում էր բուրժուա-դեմոկրատական հանրապետությունների մեծամասնության մեջ,— ցմահ իրավազուրկ հայտարարվող որոշ կարգի քաղաքացիների, այլ վերաբերում է միայն շահագործողներին, միայն նրանց, ովքեր



հակառակ սոցիալիստական Խորհրդային Հանրապետության հիմնական օրենքներին, համառում են իրենց շահագործական դրության պահպանության գործում, կապիտալիստական հարաբերությունների պահպանման գործում: Հետևաբար, Խորհրդային հանրապետության մեջ, մեկ կողմից, սոցիալիզմի օր-ավուր ամրապնդվելու և շահագործող մնալու կամ կապիտալիստական հարաբերությունները պահպանելու օբյեկտիվ հնարավորություն ունեցող մարդկանց թիվը օր-ավուր կրճատվելու հետ միասին ինքնին պակասում է ընտրական իրավունքից զրկվողների տոկոսը: Այդ տոկոսը Ռուսաստանում այժմ հազիվ թե յերկու-յերեք տոկոսից ավելի լինի: Մյուս կողմից, առաջին հարձակումը դադարեցնելը և էքսպրոպրիատորների էքսպրոպրիացիայի ավարտելն ամենամոտիկ ապագայում կարող է, որոշ պայմաններում, ստեղծել այնպիսի դրություն, երբ պրոլետարական պետական իշխանությունը կընտրի շահագործողների դիմադրության

ճնշման այլ յեղանակներ և կմտցնի ընդհանուր ընտրական իրավունք՝ առանց վորևէ սահմանափակման»։ (Լենին, հատոր XXIV, էջ 94, Կուսհրատի հրատարակություն, 1935 թ.)։ Թվում է, թե պարզ է։

Այսպես է գործը ԽՍՀՄ-ի Սահմանադրության նախագծի շուրջն արված ուղղումների և լրացումների նկատմամբ։

## VI
## ԽՍՀՄ-Ի ՆՈՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Դատելով համարյա հինգ ամիս տևող համաժողովրդական քննարկման արդյունքներից, կարելի յե յենթադրել, վոր Սահմանադրության նախագիծը հավանություն կգտնի ներկա Համագումարի կողմից։ (Բուռն ծափահարություններ, վորոնք փոխարկվում են ովացիայի։ Դահլիճը վոտքի յե կանգնում)։

Մի քանի որից Խորհրդային Միությունը կունենա նոր, ծավալուն սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքների վրա կա-



ռուցված սոցիալիստական Սահմանադրություն։

Դա կլինի մի պատմական փաստաթուղթ, վորը պարզ ու սեղմ, համարյա արձանագրական վոճով, կխոսի ԽՍՀՄ-ում սոցիալիզմի տարած հաղթության փաստերի մասին, կապիտալիստական ստրկությունից ԽՍՀՄ-ի աշխատավորների ազատագրման փաստերի մասին, ԽՍՀՄ-ում ծավալուն, մինչև վերջը հետևողական դեմոկրատիայի հաղթության փաստերի մասին։

Դա կլինի մի փաստաթուղթ, վորը կըվկայի, թե այն, ինչի մասին յերազել են և շարունակում են յերազել միլիոնավոր ազնիվ մարդիկ կապիտալիստական յերկիրներում,—արդեն իրականացվել է ԽՍՀ Միությունում։ (Բուռն ծափահարություններ)։

Դա կլինի մի փաստաթուղթ, վորը կվկայի, թե այն, ինչ վոր իրականացված է ԽՍՀՄ-ում, լիովին կարող է իրականացվել նաև մյուս յերկիրներում։ (Բուռն ծափահարություններ)։

Բայց դրանից հետևում է, վոր ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրության միջազգային նշա-

նակությունը հաղիվ թե կարելի լինի գերագնահատել։

Այժմ, յերբ ֆաշիզմի պղտոր ալիքը լուտանք է թափում բանվոր դասակարգի սոցիալիստական շարժման վրա և ցեխի հետ է խառնում քաղաքակիրթ աշխարհի լավագույն մարդկանց դեմոկրատական ձգտումները, ԽՍՀՄ-ի Նոր Սահմանադրությունը մի մեղադրական ակտ կլինի ֆաշիզմի դեմ, մի ակտ, վորն ասում է, թե սոցիալիզմը և դեմոկրատիան անպարտելի յեն։ (Ծափահարություններ)։ ԽՍՀՄ-ի Նոր Սահմանադրությունը բարոյական օգնություն և իրական օժանդակություն կլինի բոլոր նրանց համար, ովքեր այժմ կռիվ են մղում ֆաշիստական բարբարոսության դեմ։ (Բուռն ծափահարություններ)։

Ե՛լ ավելի մեծ նշանակություն ունի ԽՍՀՄ-ի Նոր Սահմանադրությունը ԽՍՀՄ-ի ժողովուրդների համար։ Յեթե կապիտալիստական յերկիրների ժողովուրդների համար ԽՍՀՄ-ի Սահմանադրությունը կունենա գործողությունների ծրագրի նշանակություն, ապա ԽՍՀՄ-ի ժողովուրդների համար նա ունի իրենց պայքարի հանրագումարի նշանակություն, մարդկության



ազատագրման ճակատում նրանց տարած հաղթությունների հանրագումարի նշանակություն։ Վորպես արդյունք պայքարի ու զրկանքների անցած ուղու՝ հաճելի ու բերկրալի յե ունենալ իր սեփական Սահմանադրությունը, վորը խոսում է մեր հաղթությունների պտուղների մասին։ Հաճելի և բերկրալի յե գիտենալ, թե ինչի համար են մարտնչել մեր մարդիկ և ինչպես են ձեռք բերել նրանք համաշխարհային-պատմական հաղթությունը։ Հաճելի և բերկրալի յե գիտենալ, վոր մեր մարդկանց առատորեն թափված արյունը ապարդյուն չի անցել, վոր այդ արյունն իր արդյունքներն է տվել։ (Յերկարատև ծափահարություններ)։ Դա հոգեպես զինում է մեր բանվոր դասակարգին, մեր գյուղացիությանը, մեր աշխատավոր ինտելիգենցիային։ Դա առաջ է շարժում և բարձրացնում է օրինական հպարտության զգացմունքը։ Դա ամրապնդում է հավատը դեպի մեր ուժերը և մոբիլիզացիայի յե յենթարկում նոր պայքարի՝ կոմունիզմի նորանոր հաղթություններ նվաճելու համար։ (Բուռն ովացիա։ Ամբողջ դահլիճը վոտքի

յե կանգնում: Վորոտալից «ուռա»: Ընդհանուր բացականչություններ՝ *«Կեցցե՛ ընկեր Ստալինը»*: Համագումարը հոտընկայս յերգում ե «Ինտերնացիոնալ»: «Ինտերնացիոնալը» յերգելուց հետո ովացիան վերսկսվում ե: Բացականչություններ՝ «Ուռա», *«Կեցցե՛ մեր առաջնորդ ընկեր Ստալինը»*):






ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն—„Խորհրդ. Հայաստան"

**Բացված ե 1937 թ. բաժանորդագրություն**

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս ե տեսնում ամիսը 2 անգամ

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ

12 ամիսը . . 6 ռուբ
6 » . . 3 »
3 » . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ"-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին: